## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս հետևել պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ



ՀՈՒԼԻՍ 1976

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Лениниян угиов» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ










# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ ԵՎՐՈՊԱՅԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՈՒ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿՈՆՖԵՐԱՆՍՈՒՄ

## 1976 թ. հունիսի 29-ին, Բեռլինում

*Թանկագին ընկերնե՛ր:*

*Սովետական Միության կոմունիստական կուսակցության պատվիրակությունը ջերմորեն ողջունում է Եվրոպայի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների կոնֆերանսի մասնակիցներին: Մենք ձեզ ենք հաղորդում տասնհինգուկես միլիոն սովետական կոմունիստների եղբայրական բարեկամության ու մարտական համերաշխության զգացումները: Մենք նաև սրտագին շնորհակալություն ենք հայտնում Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցության ընկերներին և անձամբ ընկ. Հոնեկերին՝ նրանց ցուցաբերած հոգատարության, մեր կոնֆերանսի հիանալի կազմակերպման համար:*

*Այս դահլիճում ներկա են Եվրոպայի քսանինը կոմկուսակցությունների ղեկավար գործիչները: Այստեղ հավաքվել են մարդիկ, որոնք իրենց կյանքը նվիրել են աշխատավոր ժողովրդի իրավունքների, նոր, արդարացի հասարակարգի համար, ժողովուրդների հիրավի կայուն խաղաղության համար մղվող պայքարին: Մեր կուսակցությունները աշխատում են տարբեր պայմաններում և լուծում են տարբեր խնդիրներ, իրենց տակտիկան ու ստրատեգիան համապատասխանեցնելով իրենց երկրի կոնկրետ իրադրությանը: Բայց մենք բոլորս միասնական պայքարի մասնակիցներն ենք, մենք բոլորս շարժվում ենք մի ուղղությամբ և մեզ բոլորիս միավորում է վերջնական ընդհանուր վեհ նպատակը: Ուստի մեզ՝ եվրոպական կոմունիստներիս համար օգտակար է ի շահ մեր ընդհանուր գործի կարծիքներ փոխանակել, քննարկել այնպիսի կարևոր ու հրատապ թեմա, ինչպիսին է Եվրոպայի խաղաղությունը, համագործակցությունը, անվտանգությունն ու սոցիալական առաջադիմությունը:*

*Ինչ-որ չափով խորհրդանշական կարելի է համարել այն, որ մենք հավաքվել ենք հատկապես այստեղ՝ Բեռլինում: Այն քաղաքը, որտեղ ավարտվեց հիտլերիզմի ջախջախումը, այն քաղաքը, որը դեռ երեսուն տարի առաջ փլատակների մեջ էր, այժմ ներկայացնում է սոցիալիստական վերածնության, ծաղկման և առաջընթացի հիասքանչ օրինակ: Այսօր դա Գերմանական Դեմոկրատական Հանրապետության մայրաքաղաքն է, այն պետության, որի բոլոր խոհերը, ինչպես վերջերս վերստին հաստատեց ԳՍՄԿ IX համագումարը, կապված են խաղաղ ստեղծարար աշխատանքի հետ՝ հանուն կոմունիստական գալիքի:*

*Եվ ահա այդ Բեռլինը հյուրընկալորեն ընդունում է Եվրոպայի կոմունիստներին, որոնք հավաքվել են, որպեսզի նրա ժողովուրդներին առաջարկեն դեպի խաղաղության ու սոցիալական առաջադիմության նոր հորիզոններ առաջ*

շարժվելու ուղիները: Հիրավի, դա Եվրոպայում կատարված պատմական փոփոխությունների վառ ցուցանիշ է:

Այսօր մեր մայրցամաքը արդեն բնավ էլ այն Եվրոպան չէ, որը երեսուն տարի առաջ երկրորդ համաշխարհային պատերազմից դուրս եկավ ավերված, արյունով ողողված, հրդեհներով ճարակված: Դա նույնիսկ այն Եվրոպան չէ, որպիսին էր նա ընդամենը տասը-տասնհինգ տարի առաջ, «սառը պատերազմի» ժամանակաշրջանում: Փոխվել է դասակարգային ուժերի հարաբերակցությունը միջազգային առումով և շատ պետությունների ներսում: Մեծապես աճել է այն դերը, որ Եվրոպայի հասարակական կյանքում խաղում են բանվոր դասակարգը ու նրա ավանգարդը կազմող կոմունիստական կուսակցությունները:

Այն, ինչ ձեռք են բերել Եվրոպայի ժողովուրդներն այսօր, նախ և առաջ ֆաշիստական ագրեսորների և ստրկացնողների դեմ մղված ազատագրական պայքարի արգասիքն է: Տասնյակ միլիոնավոր մարդիկ իրենց կյանքը տվեցին այդ պայքարում: Նրանք իրենց ավանդը մուծեցին Եվրոպայի վերափոխման գործում: Այդ մասին մենք երբեք չենք մոռանա:

Այսօրվա Եվրոպան զգալի չափով մայրցամաքի մի շարք երկրներում սոցիալիզմի և կոմունիզմի հաջող կառուցման արգասիքն է: Նա նաև խաղաղության այն հաստատակամ ու անշեղ պայքարի արգասիքն է, որը սոցիալիզմի երկրները մղում են միջազգային ասպարեզում:

Դրա հետ մեկտեղ, Եվրոպայի նոր կերպարանքը այն հարաճուն դասակարգային պայքարի արդյունքն է, որ մղում են բուրժուական երկրների աշխատավորները բանվոր դասակարգի գլխավորությամբ, դա կայուն խաղաղության համար հասարակական լայն շրջանների պայքարի արդյունքն է:

Մեր ապրած ժամանակաշրջանի կարևոր տարբերիչ գիծը այն հանգամանքն է, որ այսօրվա Եվրոպայում այդ փոփոխությունները տեղի են ունենում կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացման ֆոնի վրա: Այստեղ կամենում եմ ընդգծել, որ դա բնավ էլ ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական ու բարոյական ճգնաժամ է: Նա մասսաներին ավելի ու ավելի է համոզում, որ կապիտալիզմը ապագայից զուրկ հասարակարգ է, և դրանով իսկ բազմապատկում է մյուս՝ սոցիալիստական ուղու կողմնակիցների թիվը: Այդ ճգնաժամը չի կարելի կանգնեցնել ո՛չ իմպերիալիստների ռազմա-քաղաքական բլոկների աշխուժացումով և սպառազինությունների մրցավազքով, ո՛չ մոնոպոլիաների տնտեսական ինտեգրացմամբ, ո՛չ սոցիալական ռեֆորմների պատրանքով, ո՛չ էլ բռնություններով:

Այսօր, ավելի քան երբևիցե, պարզորեն երևում է, որ իմպերիալիզմը այլևս չի կարող Եվրոպայում թելադրել նրա ճակատագիրը: Այժմ այդ ճակատագիրը որոշելու գործում ծանրակշիռ խոսք է պատկանում սոցիալիստական պետություններին, կապիտալի երկրների բանվորական ու դեմոկրատական շարժմանը: Եվ հենց այդ ուժերին է պատկանում վճռական ծառայությունն այն բանում, որ Եվրոպան ահա արդեն ավելի քան երեսուն տարի ապրում է խաղաղության պայմաններում:

Եվրոպայում երևան եկած նոր պայմաններում, ի վերջո, իրենց լուծումը գտան սուր և պայթյունի վտանգով հղի շատ պրոբլեմներ, որոնք մայրցամաքը տենդի մեջ էին պահում երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակներից: Վերջին տարիներս Ֆրանսիայի, ԳՖՀ-ի և արևմտյան այլ երկրների հետ սոցիալիստական պետությունների կնքած կարևոր պայմանագրերն ու համաձայնագրերը, արևմտյան Բեռլինի վերաբերյալ քառակողմ համաձայնագիրը փոխեցին Եվրոպայի միջազգային իրադրությունը դեպի լավը:

Խաղաղ գոյակցության սկզբունքները առաջատար միտում դարձան պետությունների փոխհարաբերություններում: Դա իր առավել լիակատար արտահայտությունը գտավ ԱՄՆ-ի և Կանադայի մասնակցությամբ համաեվրոպական խորհրդակցության հաջող անցկացման փաստի մեջ: Դա խաղաղության ուժերի քաղաքական վիթխարի հաղթանակն է:

Խորհրդակցության հանրագումարային փաստաթուղթը պետությունների



խաղաղ շփման ու համագործակցության հարուստ, բազմակողմանի օրենսգիրքն է: Մենք ձգտում ենք նրա բոլոր դրույթները կենսագործել: Բայց ամենից ավելի մենք գնահատում ենք այն, որ այդ փաստաթուղթը նպատակամղված է Եվրոպայի կայուն խաղաղության ապահովմանը: Չէ՞ որ հենց այդպիսին էր համաեվրոպական խորհրդակցության գլխավոր նպատակը՝ նպաստել եվրոպական ժողովուրդների խաղաղության և անվտանգության ամրապնդմանը:

Միջազգային լարվածության թուլացման գործի հաջողությունը ոգեշնչեց և ամրապնդեց խաղաղության ու առաջադիմության ուժերին, բարձրացրեց նրանց հեղինակությունն ու ազդեցությունը մասսաների մեջ: Նա ցույց տվեց բուրժուական երկրների կառավարող շրջանների ռեալիստորեն մտածող ներկայացուցիչների բռնած դիրքերի հիմնավորվածությունը, բայց նա նաև զգաստացրեց և ակտիվացրեց ռեակցիայի և միլիտարիզմի ուժերին, նրանց, ովքեր կկամենային Եվրոպան և ամբողջ աշխարհը ետ քաշել դեպի «սառը պատերազմի» ժամանակները և միջուկային աղետի եզրին հավասարակշռություն պահպանելու ժամանակները: Իրարանցում առաջ եկավ նրանց մեջ, ովքեր հարստանում են մահվան և կործանման միջոցների արտադրությամբ, ովքեր չեն պատկերացնում քաղաքական այլ կարիերա, բացի սոցիալիզմի երկրների, կոմունիստների դեմ «խաչակրաց արշավանք» հրահրելուց, կամ, ինչպես այդ անում են Չինաստանի մաոյական ղեկավարները, բացեիբաց կոչ են անում «պատրաստվել նոր պատերազմի», հույս ունենալով իրենց համար օգուտ կորզել, իրար հետ գժտեցնել մյուս պետություններին ու ժողովուրդներին:

Այդ տարասեռ ուժերի հակազդեցությունը լարվածության թուլացմանը տարբեր ձևեր է ընդունում: Սակայն գլխավորը արդեն չտեսնված մասշտաբների հասած սպառազինությունների մրցավազքն է՛լ ավելի ուժեղացնելու ձգտումն է:

Դրա համար իմպերիալիզմի ագրեսիվ ուժերը և նրանց ձայնակիցները վերստին գործի են դնում ծամծմված առասպելը տխրահռչակ «սովետական սպառնալիքի» վերաբերյալ, որը, իբր, կախվել է Արևմուտքի երկրների վրա: Ինչպես մասսայական ինֆորմացիայի միջոցներով, այնպես էլ հաճախ աչքի ընկնող դիրք գրավող գործիչների կողմից համառորեն տարածվում են անհեթեթ պնդումներ, որոնք կոպիտ կերպով խեղաթյուրում են Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների քաղաքականությունը:

Հակառակ ողջամտությանը, սոցիալիզմի երկրներին վերագրվում է «պատասխանատվություն» ուրիշ պետություններում տեղի ունեցող ներքին քաղաքական իրադարձությունների համար, քաղաքացիական և ազգային-ազատագրական պատերազմների համար: Քաղքենիներին ահաբեկում են «ռուսական տանկերի հրոսակախմբերով», նրանց ներշնչում են, թե իբր ՍՍՀՄ-ը և Վարշավայի պայմանագրի մյուս երկրները հսկայական մասշտաբներով մեծացնում են սպառազինությունները, նախապատրաստում «պատերազմ ընդդեմ Արևմտյան Եվրոպայի»:

Բայց հերյուրանքները ստվարաթղթե տնակի պես խորտակվում են, հենց որ դիմում ենք փաստերին, ռեալ իրականությանը:

Եթե խոսելու լինենք Կենտրոնական Եվրոպայի մասին, ապա Վարշավայի պայմանագրի և ՆԱՏՕ-ի երկրների զինված ուժերի չափերի միջև այստեղ մեծ տարբերություններ չկան: Գոյություն ունի, այն էլ արդեն շատ տարիներ, այդ զինված ուժերի քիչ թե շատ միատեսակ մակարդակ (յուրաքանչյուր կողմի մոտ դրանց պրոֆիլների որոշակի տարբերությամբ հանդերձ): Եվ արևմտյան տերություններին դա նույնքան քաջ հայտնի է, որքան և մեզ:

Ուստի սոցիալիստական երկրները առաջարկում են համաձայնության գալ կողմերի զինված ուժերի և սպառազինությունների միատեսակ կրճատման շուրջ (սկզբում թեկուզ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի համար), այն հաշվով, որ չփոփոխվի ուժերի հարաբերակցությունը, իսկ կողմերի ռազմական ծախսերը կրճատել և ընդհարման վտանգը նվազեցնել: Թվում է, թե ավելի տրամաբանական և ավելի արդարացի բան չի կարող լինել: Բայց ո՛չ, ՆԱՏՕ-ի երկրները համառորեն փորձում են հասնել այն բանին, որ կրճատումը տեղի ունենա ոչ միատե-

*ստեղծողներն ու շարունակողներն են, որոնք դարձել են համաշխարհային կուլտուրայի անբաժանելի մասը: Հարկ կա՞ արդյոք ասելու, որ այդ մեծ ավանդույթները շատ բան են պարտավորեցնում մեր դարաշրջանի եվրոպացիներին:*

*Դրա հետ մեկտեղ, կա նաև այլ բան՝ Եվրոպան մարդկության պատմության մեջ ամենաահավոր պատերազմների աղբյուրն է: Առնվազն հարյուր միլիոն կործանված մարդկային կյանք՝ այսպիսին է Եվրոպայի պատմության արյունալի հաշվեկշիռը մինչև մեր օրերը: Դա նույնպես եվրոպացիների ավանդն է մարդկության պատմության մեջ, բայց մի սոսկալի ավանդ, որը նախազգուշացնում և պարտավորեցնում է: Պարտավորեցնում է մտածել անցյալի մասին՝ հանուն ապագայի:*

*Եվրոպան թևակոխել է սկզբունքորեն նոր դարաշրջան, որը արմատապես տարբերվում է այն ամենից, ինչ եղել է առաջ: Չհասկանալ այդ բանը՝ եվրոպացիների համար կնշանակեր ընդառաջ գնալ աղետին:*

*«Սուր բարձրացնողը սրով էլ կմեռնի»— ասում է հին իմաստությունը: Մեր օրերի Եվրոպայում սուր բարձրացնողը ոչ միայն ինքը կմեռնի, նա նույնիսկ ի վիճակի չէ պատկերացնելու, թե նրա հետ բոցերի մեջ էլի ով կկործանվի՝ թշնամիները, բարեկամները, դաշնակիցները, թե՞ պարզապես հարևանները, մոտիկները, թե՞ հեռավորները:*

*Եվրոպայի տերիտորիայում միջուկային զենք կիրառելու բուն միտքը սովետական մարդկանց համար հրեշավոր է թվում: Եվրոպական տունը ծայր աստիճան նեղ ու հրավտանգ է դարձել: Չկա և չի լինի այնպիսի հրշեջ խումբ, որն ընդունակ լինի մարելու կրակը, եթե այն իսկապես բռնկվի:*

*Խաղաղությունը Եվրոպայի ու եվրոպացիների համար, հիրավի, կենսական անհրաժեշտություն է դարձել: Ուստի մենք, կոմունիստնե՛րս, ամենամարդասիրական, կենսահաստատ աշխարհայացքի կրողներս, գտնում ենք, որ այժմ, ավելի քան երբևիցե, կարևոր է հարթել ռազմական լարվածության թուլացման ճանապարհը, կանգնեցնել սպառազինությունների մրցավազքը:*

*Բացառիկ կարևոր է նաև ստեղծել Եվրոպայի խաղաղ համագործակցության, այսպես ասած, նյութական հյուսվածք, մի հյուսվածք, որը ամրապնդեր եվրոպական ժողովուրդների և պետությունների կապերը, նրանց է՛լ ավելի շահագրգռված դարձներ տևական խաղաղության պահպանման նկատմամբ: Ես ի նկատի ունեմ փոխշահավետ համագործակցության տարբեր ձևերը՝ առևտուրը, արտադրական կոոպերացիան, գիտատեխնիկական կապերը:*

*Այդ խնդիրը միանգամայն ռեալ է: Վերջին տարիներս, լարվածության ամրապնդվող թուլացման մթնոլորտում, Եվրոպայի արևելքի և արևմուտքի պետությունները այդպիսի համագործակցության արդեն քիչ փորձ չեն կուտակել: Օրինակ, կապիտալիստական երկրների հետ Սովետական Միության առևտրական շրջանառությունը վերջին հինգ տարում աճել է ավելի քան երեք անգամ: Ավելի ու ավելի մեծ նշանակություն է ստանում համագործակցությունը փոխադարձ շահավետության հիմունքներով խոշոր մասշտաբի օբյեկտներ ստեղծելու ասպարեզում:*

*Կարծում եմ, Եվրոպայի կոմունիստները միասնական կարծիքի են այդպիսի կապերի հետագա զարգացման օգտավետության ու ցանկալիության վերաբերյալ: Դրանք օգնում են ստեղծելու կայուն խաղաղության նյութական հիմք: Դրանք համապատասխանում են աշխատավորների անմիջական շահերին: Բավական է ասել, որ Արևմուտքում հրապարակված տվյալներով, սոցիալիզմի երկրների հետ տնտեսական կապերը այս ճգնաժամային ժամանակներում Արևմտյան Եվրոպայում արդեն աշխատանք են ապահովում հարյուր հազարավոր կամ նույնիսկ միլիոնավոր մարդկանց համար:*

*Սակայն այդ ճանապարհին ևս քիչ չեն կապիտալիստական երկրների կողմից հարուցվող խոչընդոտները, որոնք հաճախ խտրական միջոցառումների են դիմում սոցիալիստական պետությունների նկատմամբ:*

*Կյանքը ավելի ու ավելի մեծ չափով է առաջին պլանի վրա դնում եվրոպական պետությունների համակողմանի փոխշահավետ գործակցության զարգացման խնդիրները՝ հանուն նրանց ընդհանուր շահերը շոշափող կարևոր*



*պրոբլեմների համատեղ լուծման: Մենք, ինչպես հայտնի է, ներկայացրել ենք առաջարկություն համաեվրոպական կոնգրեսներ կամ միջպետական խորհրդակցություններ անցկացնելու մասին՝ նպատակ ունենալով քննարկել համագործակցության հարցերը այնպիսի պրոբլեմների լուծման ասպարեզում, ինչպիսին է շրջակա միջավայրի պահպանությունը, տրանսպորտի, էներգետիկայի զարգացումը: Խոսքով արևմտյան պետությունները կարծես «կողմ» են, բայց գործով խուսափողական դիրք են բռնում, ակնհայտորեն չեն շտապում գործնական քայլեր անելու: Ինչպե՞ս դա համատեղել այն հավաստիացումների հետ, թե իրենք պաշտպանում են Հելսինկիում ձեռք բերված պայմանավորվածությունները:*

*Ինչ վերաբերում է ՍՍՀՄ-ին, ապա նա մտադիր է այսուհետև ևս ընթանալ եվրոպական երկրների տնտեսական կապերի զարգացման ուղիով՝ հանուն կայուն խաղաղության և եվրոպական ժողովուրդների ռեալ շահավետության:*

*Ընկերնե՛ր: Պետությունների միջև վստահության մթնոլորտի ստեղծումը, որն այնքան անհրաժեշտ է կայուն խաղաղության համար, պահանջում է, որ ժողովուրդները ավելի ու ավելի լավ ճանաչեն ու հասկանան միմյանց: Մենք նախ և առաջ հենց այս տեսակետից ենք մոտենում կուլտուրական փոխանակման և մարդկային կոնտակտների հարցերին՝ դրանց ամբողջ բազմազանությամբ հանդերձ:*

*Իսկ ի՞նչպես է բանը այդ բնագավառում: Մենք Սովետական Միությունում կարևոր ենք համարում, որ մեր մարդիկ ավելի շատ բան իմանան մյուս ժողովուրդների անցյալի ու ներկայի մասին, ավելի խոր կերպով ճանաչեն նրանց կուլտուրան, կարողանան հարգել մյուս երկրների պատմական փորձն ու նվաճումները:*

*Ուստի սովետական պետությունն ըստ ամենայնի խրախուսում է կուլտուրական փոխանակումը՝ այն ամրապնդում է միջկառավարական համաձայնագրերով, տարեցտարի ընդլայնում է նրա ծավալը: Ներկայումս մեր երկիրը կուլտուրական կապեր ունի աշխարհի 120 երկրների հետ: Հելսինկիի խորհրդակցության եզրափակիչ ակտին համապատասխան, մենք լրացուցիչ միջոցներ ենք ձեռնարկել՝ ավելացնելու գրքերի, ֆիլմերի, արվեստի ստեղծագործությունների փոխանակումը: Այդ հարցերում, ինչպես հայտնի է, նույնպիսի գիծ են վարում նաև համաեվրոպական խորհրդակցության մասնակից մյուս սոցիալիստական երկրները:*

*Իսկ ինչ վերաբերում է կապիտալիստական պետություններին, ապա մենք նրանցից որքան ասես լսել ենք գեղեցիկ խոսքեր հոգևոր արժեքների փոխանակման մասին, բայց ահա իրական գործերը շատ քիչ են:*

*Դա դրսևորվում է ամենատարբեր բնագավառներում: Անգլիայում և Ֆրանսիայում, օրինակ, 6—7 անգամ ավելի քիչ սովետական հեղինակների գրքեր են հրատարակվում, քան մենք՝ ՍՍՀՄ-ում անգլիացի ու ֆրանսիացի հեղինակների գրքերը: Արևմտյան երկրներում մի քանի տասնյակ անգամ ավելի քիչ սովետական կինոնկարներ են ցուցադրվում, քան մեզ մոտ՝ արևմտյան կինոնկարներ, երեք անգամ ավելի քիչ սովետական հեռուստատեսային ծրագրեր են հաղորդվում և այլն:*

*Ընդհանուր առմամբ, սոցիալիստական երկրների ժողովուրդները զգալիորեն ավելի լավ են իրազեկ Արևմուտքի կյանքին, քան կապիտալիստական երկրների աշխատավոր մասսաները սոցիալիստական իրականությանը: Որո՞նք են այդ երևույթի պատճառները: Ամենախոր պատճառն այն է, որ բուրժուական երկրների կառավարող դասակարգը բացահայտորեն շահագրգռված չէ, որ այդ երկրի աշխատավորները սկզբնաղբյուրից իմանան ճշմարտությունը սոցիալիզմի երկրների, նրանց հասարակական և կուլտուրական զարգացման մասին, սոցիալիստական հասարակարգի քաղաքացիների քաղաքական ու բարոյական սկզբունքների մասին:*

*Սոցիալիզմի ձգողական ուժը թուլացնելու, նրան արատավորելու նպատակով բուրժուական պրոպագանդան հնարել է «ներփակ հասարակարգի» մասին առասպելը: Պնդում են, թե, իբր, սոցիալիստական երկրները խուսափում են*

Կոնֆերանսի մեր համաձայնեցրած փաստաթղթում կոմունիստների պատրաստակամությունն է արտահայտվում՝ նպաստելու աշխարհում նոր, արդար տնտեսակարգի հաստատմանը։ Գաղութային և կախյալ նախկին երկրների հետ զարգացած պետությունների քաղաքական ու տնտեսական իրավահավասար հարաբերությունների և համագործակցության համար մղվող պայքարը, հարաբերություններ, որպիսիք սոցիալիստական պետությունները վաղուց արդեն հաստատել են այդ երկրների հետ, մեր կուսակցությունների ընդհանուր ինտերնացիոնալ պարտքի կարևոր մասն է։

Ընկերնե՛ր։ Յուրաքանչյուր մասնակցի հայացքների հարգումը, քննարկման դեմոկրատական և իսկական ընկերական մթնոլորտը, տարբեր կուսակցությունների փորձի լայն համադրումը, պարտնյորների շահերի նկատմամբ բարեկամական ուշադիր վերաբերմունքը մեզ բոլորիս հնարավորություն տվեցին համատեղ գնահատականների ու հետևությունների հանգելու մի շարք հրատապ պրոբլեմներում, որոնք այսօր հսկայական նշանակություն ունեն Եվրոպայի ու ամբողջ աշխարհի ժողովուրդների համար։ Մենք կարողացանք մշակել այդ հարցերի վերաբերյալ կարևոր փաստաթուղթ, որը հիմնվում է մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների վրա։

Ուզում եմ ընդգծել, որ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը այդ փաստաթուղթը դիտում է որպես մի փաստաթուղթ, որը մեր կուսակցությանը պարտավորեցնում է եռանդուն և համառ պայքար մղել Եվրոպայի կոմունիստների կողմից կոլեկտիվ կերպով առաջադրված նպատակների իրականացման համար։

Եվ մենք համոզված ենք, որ Եվրոպայի կոմունիստների միասնության դրոշը բարձր պարզած, մեր կոնֆերանսի արդյունքները կնպաստեն մեր ջանքերի միավորմանը, աշխատավորների արմատական շահերի, դեմոկրատիայի և սոցիալիզմի, Եվրոպայի կայուն խաղաղության համար մեր համատեղ պայքարի ակտիվացմանը։

Շնորհակալություն, ընկերներ, ուշադրության համար։

---

# ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՄԱՆԻՖԵՍՏԸ

ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ իսկական մանիֆեստ... Սովետական և համաշխարհային առաջադեմ հասարակայնությունը այսպես պատկերավոր ու ճիշտ է բնութագրել ՍՄԿԿ XXV համագումարում Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի «ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում» զեկուցումը։ Այս ոգեշնչող փաստաթղթով լենինյան կուսակցությունն արժանավայել կերպով շարունակեց հեղափոխական պայքարի, սոցիալիստական և կոմունիստական շինարարության պրակտիկայի ստեղծագործական ընդհանրացման հաջորդական գիծը, որն անցնում է նրա ողջ գործունեության միջով, նոր նշանակալի ավանդ ներդրեց գիտական կոմունիզմի գանձարանը։

## I

ՄԵԾ ԼԵՆԻՆԸ 1922 ԹՎԱԿԱՆԻ նոյեմբերի 20-ի իր վերջին մարգարեական ելույթում աներեր համոզմունք հայտնեց, որ նէպական Ռուսաստանը կդառնա սոցիալիստական Ռուսաստան։ Այս հայտարարությունը հնչեց այն պահին, երբ պահանջվում էր դեռևս տարիների անխոնջ պայքար՝ ապահովելու համար սոցիալիստական տնտեսական կացութաձևի հաղթանակն ամենուրեք, «ո՞վ-ում» պատմական հարցի վերջնական լուծումը բանվոր դասակարգի, աշխատավոր ժողովրդի օգտին։ «Սոցիալիզմն արդեն այժմ,— շեշտել է Վլադիմիր Իլյիչը,— հեռավոր ապագայի կամ մի ինչ-որ վերացական պատկերի կամ ինչ-որ սրբապատկերի հարց չէ... Մենք սոցիալիզմը մտցրել ենք առօրյա կյանքի մեջ և այստեղ է, որ պետք է գլուխ հանենք։ Ահա թե ի՛նչն է մեր օրվա խնդիրը, ահա թե ի՛նչն է մեր դարաշրջանի խնդիրը» (Երկեր, հ. 33, էջ 528)։

Վ. Ի. Լենինի՝ այսպես ձևակերպած խնդիրը փայլուն լուծում գտավ սոցիալիստական շինարարության տեսության ու պրակտիկայի մեջ։ Ելնելով դրանից, մեր կուսակցությունը, ինչպես միշտ, առաջնահերթ նշանակություն է տալիս նոր հասարակության կյանքի տարբեր կողմերի հետագա, առավել խոր ճանաչմանը։ Քանզի մենք ժամանակակիցներն ենք այն նույն դարաշրջանի, որի սկիզբը դրել է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, իսկ իրական սոցիալիզմի անչափ առաջ գնացած պրակտիկան՝ նրա հասունության աստիճանի բարձրացման հետ զուգընթաց, ի հայտ է բերում նորանոր պրոբլեմներ, դառնում ավելի ու ավելի բազմապիսի՝ իր ձևերով և ավելի հարուստ՝ բովանդակությամբ։ Դրա վկայությունը այն սևեռուն ուշադրությունն է, որ այդ խնդրին նվիրել են կուսակցական համագումարներն ու Կենտկոմի պլենումները։ Այդ խնդրի լուծման գործում, այժմ արդեն զարգացած սոցիալիզմի էտապում, հսկայական դեր կատարեց ՍՄԿԿ XXV համագումարը։ Այն կարիք չուներ ներկայի ու ապագայի սրբապատկերման ոչ մի «մոդելի», որը, իբրև կանոն, արհեստականորեն կառուցում են ոչ թե իրականությունը հասկանալու ձգտումից, այլ կոնյունկտուրային քաղաքական շահ կորզելու ցանկությունից։ Ի հակադրություն նման սուբյեկտիվիստական մոտեցման, համագումարը կա-

— Նոր հնգամյակի առաջին տարվա առաջին իսկ ամիսներից հարվածային աշխատանքը հերթական հնգամյա պլանի հաջող կատարման կարևոր նախադրյալն են։ Հստակորեն կենսագործել կուսակցության դիրեկտիվները, անկյունաքարը դարձնել հաստատակամությունը, պետությունը, ժողովրդի շահերը՝ այսպես և միմիայն այսպես պետք է աշխատի յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր ոք, ով սրտանց շահագրգռված է մեր ընդհանուր գործով»։

Ճիշտ այնպես, ինչպես պրոլետարիատը, իր շուրջը համախմբելով ճնշված ու շահագործվող մասսաներին, կապիտալիզմի օրոք հանդես է գալիս որպես կապիտալիստական հասարակարգը հեղափոխականորեն սոցիալիստականի փոխարկող «ինտելեկտուալ ու բարոյական շարժիչ, ֆիզիկական կատարող» (տե՛ս Երկեր, հ. 21, էջ 77), այդպես էլ սովետական ժողովուրդը, նրա առաջատար հասարակական ուժը՝ բանվոր դասակարգը, լենինյան կուսակցության ղեկավարությամբ զարգացած սոցիալիզմի պայմաններում, հանդես են գալիս որպես աշխարհում առաջին կոմունիստական հասարակարգ կերտողներ, որպես մարդկության պատմության մեջ մեծագույն հեղափոխական-վերափոխիչ ու խաղաղարար առաքելության կրողներ։

## II

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ հասունացած պրոբլեմները վերլուծելով մասսաների պատմական ստեղծագործության տեսանկյունից, համագումարը համակողմանիորեն ցուցադրեց աշխատանքի հանրայնացման օրենքի գործողության առանձնահատկությունները սովետական ժողովրդական տնտեսության մեջ։ Ինչպես հայտնի է, Լենինն այդ օրենքը համարում էր սոցիալիզմի անխուսափելի հաստատման գլխավոր նյութական հիմքը (տե՛ս Երկեր, հ. 21, էջ 77), իսկ արտադրամիջոցների վերածումը հանրային սեփականության Սովետական Միությունում իրականացվել է տասնյակ տարիներ առաջ։ Բայց դա դեռ չի նշանակում, թե հանրայնացման պրոցեսն ավարտված է բոլոր տեսակետներից։ Շարունակվում է արտադրության տեխնիկա-տեխնոլոգիական և կազմակերպական հանրայնացումը, որն արտահայտվում է նրա մասնագիտացման ու կոոպերացման ձևերի փոփոխման ու կատարելագործման մեջ, ծնվում են սոցիալիստական սեփականության տարբեր ձևերի պատկանող ձեռնարկությունների «ղոդման» նոր տեսակներ։ Այժմ արդեն ոչ միայն տեսական հետազոտությունը, այլ ինքը՝ գործարար առօրյան, որին մասնակցում են բազմամիլիոն մարդիկ, վկայում է այն մասին, որ էկոնոմիկայի հանրայնացման մակարդակը զարգացած սոցիալիստական հասարակարգում, որը ՍՄԿԿ XXV համագումարը բնութագրեց որպես «աստիճանաբար կոմունիստականի վերաճող» հասարակարգ, անխուսափելիորեն բարձրանում է։ Առաջին հերթին դա կապված է ժողովրդական տնտեսության վիթխարիորեն աճած մասշտաբների ու հնարավորությունների հետ։

Այսպես, արդյունաբերական արտադրության ծավալը, ինչպես որ նախատեսված է եղել ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով, իններորդ հնգամյակում ավելացել է 43 տոկոսով։ Հիմնական արտադրաֆոնդերը հնգամյակում
մեծացել են մեկուկես անգամ։ Տնտեսական այն պոտենցիալին, որի ստեղծ-
ման համար պահանջվեց գրեթե կես դար, ինչպես նշվեց համագումարում,
մենք կարողացանք ավելացնել նույն չափի պոտենցիալ ընդամենը տասը տա-
րում։ Արդեն սա բացատրում է, թե ինչու կուսակցությունից պահանջվեց, տասներորդ հնգամյա պլանը նախապատրաստելու հետ միասին, ապահովել մինչև
1990 թվականն ընկած ժամանակաշրջանի համար երկրի էկոնոմիկայի զար-
գացման ելակետային դրույթների մշակումը։ «Հեռանկարային կոնկրետ թվերի,
առաջադրանքների վրա դեռ մեծ աշխատանք պետք է կատարվի,— ասաց ընկեր
Լ. Ի. Բրեժնևը։— Բայց արդեն պատրաստված հաշվարկներից հետևում է.
1976—1990 թվականներին երկիրը մոտավորապես կրկնապատիկ շատ նյութա-
կան ու ֆինանսական ռեսուրսներ կունենա, քան անցած 15 տարում։ Դրանով



իսկ նոր հնարավորություններ են ստեղծվում կուսակցության ծրագրով վերջին համագումարների կողմից առաջադրված հիմնական սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման համար։ Դա վերաբերում է նախ և առաջ սովետական մարդկանց բարեկեցության հետագա բարձրացմանը, նրանց աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավմանը, առողջապահության, կրթության, կուլտուրայի զգալի պրոգրեսին՝ այն ամենին, ինչը նպաստում է նոր մարդու ձևավորմանը, անհատի համակողմանի զարգացմանը, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործմանը։

Յոթանասունական թվականների երկրորդ կեսի նկատմամբ այդ ստրատեգիական նպատակներն ու դրանց հասնելու միջոցները համագումարը նշել է տասներորդ հնգամյակի գլխավոր խնդրում։ Գերագույն նպատակը, որին հասնելու համար արտադրության գնալով աճող հանրայնացումը ավելի ու ավելի նպաստավոր պայմաններ է ստեղծում, եղել է ու մնում է ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացումը՝ սոցիալիստական էկոնոմիկայի դինամիկ ու համամասնական զարգացման, նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի բոլոր ամենայնի բարելավման հիման վրա։ Սա է XXV համագումարի մշակած՝ կուսակցության տնտեսական ստրատեգիայի հիմնական իմաստը։ Այդ ստրատեգիայի առանցքը, որի վրա են խարսխվում թե՛ տասներորդ հնգամյակը և թե՛ տնտեսական հեռանկարը, ինչպես ընդգծված է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, երկրի տնտեսական հզորության հետագա մեծացումն է, արտադրաֆոնդերի ընդլայնումն ու արմատական նորացումը, էկոնոմիկայի հիմքի՝ ծանր արդյունաբերության կայուն հաշվեկշռված աճի ապահովումը։

Աշխատանքի անշեղորեն շարունակվող հանրայնացումն այն խորքային պրոցեսն է, որի վրա սոցիալիզմի ժամանակ խարսխվում է կոմունիստական արտադրահարաբերությունների ձևավորումը։ Հանրայնացումը, սերտորեն կապված լինելով սոցիալիստական արտադրության մասշտաբների աճի հետ, իր անմիջական արտահայտությունն է գտնում նրա համակենտրոնացման մեջ, որը առանձնապես արագ է ընթանում մեր արդյունաբերության ասպարեզում։ ՍՄԿԿ XXV համագումարում, մասնավորապես, նշվեց վերջին տարիներին ստեղծված արտադրական և գիտա-արտադրական միավորումների բազմախոստում փորձը։ Իբրև արտադրության հանրայնացման պրոցեսի էական կողմ, որը հանգամանորեն արտացոլվել է Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, հանդես է գալիս նաև այն, որ ծանր արդյունաբերության, ինչպես նաև ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի զարգացման համար գնալով ավելի մեծ նշանակություն է ձեռք բերում երկու-երեք հնգամյակների համար նախատեսված կոմպլեքսային խոշոր ծրագրերի, օրինակ, վառելիքա-էներգետիկական կոմպլեքսի, մետալուրգիայի, մեքենաշինության առաջատար ճյուղերի զարգացման ծրագրերի մշակումը։ Նման ծրագրերը պետք է, բնականաբար, հաշվի առնեն հայրենական և համաշխարհային գիտության ու տեխնիկայի անընդմեջ առաջընթացը, ուրիշ պետությունների հետ տնտեսական համագործակցության հնարավորությունները։ Դրանցում անհրաժեշտ է նաև նախատեսել արտադրաուժերի առավել նպատակահարմար տեղաբաշխումը երկրի տերիտորիայում, նոր շրջանների, հատկապես հումքով և վառելիքով հարուստ շրջանների յուրացման պահանջմունքները։ Ինչպես տեսնում ենք, խոսքն այն մասին է, որ հետզհետե առավել լրիվ ու ռացիոնալ տիրապետենք ողջ հանրային հարստությանը, առավել հեռատեսորեն ու խնայողաբար տնօրինենք այն համապետական մասշտաբով։

Աշխատանքի հանրայնացման պրոցեսներն ամենից ավելի էական փոփոխություններ են մտցնում սոցիալիստական էկոնոմիկայի ագրարային-կոոպերատիվ սեկտորում։ Ութերորդ և իններորդ հնգամյակներում գյուղատնտեսական արտադրության մեքենայացման, մելիորացման ու քիմիացման նպատակների համար կապիտալ ներդրումների աննախընթաց աճը ցույց տվեց, որ նրա

Ինդուստրացումը վերը նշված լայն նշանակությամբ ՍՄԿԿ XXV Համագումարը քննարկել է գիտատեխնիկական առաջընթացի արագացման խնդրի կապակցությամբ: Համագումարը տվեց սկզբունքային ու բովանդակալից մարքսլենինյան այն ֆորմուլան, որն արտահայտեց այդ պրոցեսի փոխգործողությունը հասարակական հարաբերությունների տեղաշարժերի հետ: «Մենք՝ կոմունիստներս,— հայտարարեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— ելնում ենք այն բանից, որ միայն սոցիալիզմի պայմաններում է գիտատեխնիկական հեղաշրջումը ստանում ճիշտ, մարդու և հասարակության շահերին համապատասխանող ուղղություն: Իր հերթին, միայն գիտության ու տեխնիկայի առավել արագ զարգացման հիման վրա կարող են լուծվել սոցիալական հեղափոխության վերջնական խնդիրները, կարող է կառուցվել կոմունիստական հասարակարգ»: Գիտատեխնիկական հեղափոխությունը և սոցիալական հեղափոխությունը արդիականության երկու, կարծես, զուգահեռ հեղափոխական պրոցեսներ չեն, որոնք, իբր, կարող են զարգանալ իրարից անկախ, ըստ որում, առաջինը, ի տարբերություն երկրորդի, իբր, չեզոք է այս կամ այն հասարակական կարգի նկատմամբ: «Արդի գիտատեխնիկական հեղափոխությունը հասարակության առջև բաց է անում չտեսված հնարավորություններ՝ գիտությունն օգտագործելու բնության ուժերը ենթարկելու, այն պահպանելու, սոցիալական պրոբլեմներ լուծելու համար,— ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի ընդհանուր ժողովում ասաց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Կենտկոմի քարտուղար ընկեր Մ. Ա. Սուսլովը:— Այդ հեղափոխությունը հայտաբերում է կապիտալիստական կարգի խոր հակահումանիստական բնույթը, սրում է դրա բոլոր հակասությունները և միաժամանակ նյութապես նախապատրաստում կոմունիստական քաղաքակրթությունը: Հրամայական պահանջ է ստեղծվում գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները միացնելու տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ, որը բաց է անում գիտատեխնիկական հեղափոխության պահանջների իրագործման լայն ասպարեզ, թույլ է տալիս դրա արդյունքները նպատակասլաց կերպով օգտագործել մարդու բարօրության համար»:

XXV համագումարը մատնանշեց, որ գիտության նվաճումները պետք է արագորեն մարմնավորեն ո՛չ միայն առանձին, թեկուզ ամենափայլուն փորձերում և ցուցահանդեսային նմուշներում, այլև հազարավոր ու հազարավոր նոր արտադրատեսակների մեջ՝ սկսած ունիկալ մեքենաներից ու վերջացրած այն ամենով, ինչը կապված է մարդկանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման հետ: Գիտական նոր գաղափարների պրակտիկ արմատավորումն այսօր պակաս կարևոր խնդիր չէ, քան դրանց մշակումը: Պահանջվում է պատմական նշանակություն ունեցող այդ պրոցեսի մեջ ներգրավել հանրային արտադրության բոլոր օղակները, բոլոր մասնակիցներին:

Մարդու բնակության միջավայրի վրա ինդուստրիայի զարգացման հետ ավելի մեծ ներգործությամբ է պայմանավորված նաև այն, որ համագումարը դրեց սոցիալիստական բնօգտագործման պրոբլեմները: Այդ հնարավոր վել է գիտականորեն կազմակերպվող մի հասարակարգում, ուր կառուցվում է ամենամարդասիրական սոցիալ-տնտեսական սիստեմը՝ կոմունիզմը: «Կարելի է, և մարդկության պատմությունը դրա քիչ օրինակներ չգիտի, իր հետևից թողնել անպտուղ, ամայի, մարդու համար անօգուտ տարածություններ,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը:— Բայց կարելի է և պետք է, ընկերներ, վեհացնել բնությունը, բնությանն օգնել՝ առավել լրիվ բացահայտելու իր կենսական ուժերը: Կա մի այսպիսի հասարակ, բոլորիս հայտնի արտահայտություն՝ «ծաղկող երկիր»: Այդպես են անվանում այն հողերը, որտեղ մարդկանց գիտելիքները, փորձը, նրանց կապվածությունը, սերը բնության հանդեպ, հիրավի, հրաշքներ են գործում: Դա մեր սոցիալիստական ուղին է»: Այս խոսքերն ասված են գյուղատնտեսության պրոբլեմների կապակցությամբ: Բայց դրանք անմիջական առնչություն ունեն ինդուստրիալ կենտրոնների, օգտակար հանածոների շահագործման, արդյունաբերական օբյեկտների կառուցման, նոր քաղաքների շինարարության և հների ընդլայնման, դրանց կյանքի պայմանների հետ և այլն:



Սովետական հողը պետք է լավագույնս սարքավորված լինի սովետական մարդու համար՝ Վլադիմիր Մայակովսկու տողերը բառափոխելով, այսպես կարելի է արտահայտել այդ գաղափարը:

**Ուրբանիզացիայի հարցը**՝ որպես սոցիալական պրոբլեմի, XXV համագումարի նյութերը շոշափում են դեռևս Լենինի կողմից դրված ընդհանուր խնդրի լույսի տակ՝ գիտության գիտակցական գործադրության, կոլեկտիվ աշխատանքի կոմբինացիայի, մարդկության նոր վերաբնակեցման հողի վրա արդյունաբերությունը միացնելու երկրագործության հետ՝ ոչնչացնելով ինչպես գյուղի լքվածությունը, աշխարհից կտրվածությունը, այնպես էլ մեծ քաղաքներում հսկայական մասսաների հակաբնական կուտակվածությունը (տե՛ս Երկեր, հ. 21, էջ 77): Գյուղատնտեսության բնագավառում նպատակ ունենալով երկրին հուսալիորեն մատակարարել պարենամթերք և գյուղատնտեսական հումք, դրա համար միշտ ունենալ բավարար ռեզերվներ, կուսակցությունը միաժամանակ անհրաժեշտ է համարում «ավելի ու ավելի առաջ գնալ քաղաքի ու գյուղի կյանքի նյութական և կուլտուր-կենցաղային պայմանների մերձեցման ուղիով, որը մեր ծրագրային պահանջն է»:

ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ քննության են առնվել հասարակական կյանքի **ինտերնացիոնալացման** ինչպես տնտեսական, այնպես էլ գաղափարական-քաղաքական կողմերը: «Տասներորդ հնգամյա պլանը, ինչպես և բոլոր հնգամյա պլանները,— նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— կլինի մեր մեծ սոցիալիստական հայրենիքը կազմող բոլոր հանրապետությունների, ազգերի ու ազգությունների զարգացման ծրագիր: Սովետական հասարակության տնտեսական և սոցիալական առաջընթացը Ռուսաստանի Ֆեդերացիայի, Ուկրաինայի և Ղազախստանի, Բելոռուսիայի և Մոլդավիայի, Միջին Ասիայի, Մերձբալթիկայի, Անդրկովկասի հանրապետությունների առաջընթացն է: Ամբողջ երկրի սահմաններում ստեղծված միասնական տնտեսական օրգանիզմը ժողովուրդների բարեկամության ու համագործակցության ամուր նյութական հիմքն է»:

Զեկուցման մի շարք դրույթներ զարգացած սոցիալիստական հասարակարգում **սոցիալական ինտեգրացման** տենդենցի գիտական վերլուծության արդյունք են և ցույց են տալիս դասակարգային հարաբերությունների, մեր երկրում դասակարգային հիմնական տարբերությունների հաղթահարման պրոցեսի ներկա վիճակը: Դրանք կենդանի, ժամանակակից բովանդակություն են հաղորդում լենինյան՝ «Սոցիալիզմը դասակարգերի ոչնչացումն է» (Երկեր, հ. 30, էջ 122, 125) ֆորմուլային: Լենինը, ինչպես հայտնի է, տարբերում էր այդ խնդրի երկու մասեր. առաջին՝ կալվածատերերի ու կապիտալիստների տապալում, երկրորդ՝ բանվորի և գյուղացու միջև եղած տարբերության վերացում, բոլորի վերածումն աշխատողների: Խնդրի առաջին մասը երիտասարդ պրոլետարական դիկտատուրան կատարեց սովետական իշխանության հաստատումից անմիջապես հետո, իսկ նրա երկրորդ մասը, Լենինի խոսքերով ասած, «այդ անհամեմատ ավելի դժվար և անհրաժեշտորեն տևական խնդիրը» (Երկեր, հ. 30, էջ 122) ընդգրկեց մի շարք տասնամյակներ:

Այսպես, անցման շրջանի պայմաններում կենսականորեն անհրաժեշտ էր շարունակել Հոկտեմբերի սկսած միջոցառումները և տնտեսական ամեն մի արմատից զրկել քաղաքականապես արդեն տապալված պարազիտային դասակարգերին, ապահովել նրանց դուրսմղումը հասարակության սոցիալական կառուցվածքից և ոչնչացնել մարդու կողմից մարդու շահագործման բոլոր տեսակները: Հասկանալի է, որ այդ բանին կարելի էր հասնել՝ հենվելով միայն մասսայական սոցիալական լայն բազայի վրա, հեղափոխության ընթացքում ձևավորված բանվոր դասակարգի ու գյուղացիության, քաղաքի ու գյուղի աշխատավորների դաշինքի վրա: Դրա հետևանքով գյուղացիությունը, թողնելով մենատնտեսական կացութաձևը և անցնելով կոոպերատիվ ռելսերի, ձեռք բերեց մի ուրիշ, իրեն համար նոր, սոցիալական տեսակետից բանվոր դասակարգին հարազատ բնույթ: Այդ տեղաշարժի շնորհիվ ՀամԿ(բ)Կ XVII կոնֆերանսը (1932 թվական) կարողացավ առաջադրել այնպիսի խնդիրներ, ինչպես «կապիտալիստական տարրերի ու դասակարգերի վերջնական վերացումը ընդհանրապես, դասա-

կարգային տարբերությունները և շահագործում ծնող պատճառների լրիվ ոչնչացում և էկոնոմիկայում ու մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի վերապրուկների հաղթահարում, երկրի ամբողջ աշխատավոր բնակչության վերածումն անդասակարգ սոցիալիստական հասարակարգի գիտակից ու ակտիվ կառուցողների»:

Այս ասպարեզում տեղի ունեցած հաջող առաջընթացը, սոցիալիզմի հաղթանակը ՀամԿ(բ)Կ XVIII համագումարին (1939 թվական) հիմքեր ընձեռեցին հայտարարելու, որ ՍՍՀՄ-ում ապահովված է «անցյալում ոչ մի տեղ չտեսնված՝ ժողովրդի ներքին բարոյական ու քաղաքական միասնությունը, աշխատավորների բարոյա-քաղաքական միասնությունը կոմունիստական կուսակցության և սովետական իշխանության դրոշի ներքո և ղեկավարությամբ, որը ընդունակ է ո՛չ միայն վերջ դնելու թշնամական դասակարգերի մնացորդներին, նրանց խորթ ազդեցություններով, և հակահարված տալու դրսից կատարվող ամեն տեսակ թշնամական ոտնձգություններին, այլև մեր հայրենիքի հետագա աճի ու բարգավաճման լավագույն երաշխիքն է, մեր երկրում կոմունիզմի հաղթանակի երաշխիքը»: Այս հետևության ճշտությունն անհերքելիորեն ապացուցվեց Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած պատմական հաղթանակով, Սովետական Միությունում զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցմամբ:

Մեր երկրում ծավալված կոմունիստական շինարարության ընթացքում փայլուն կերպով իրեն արդարացրեց լենինյան դրույթը բանվոր դասակարգի մասին՝ որպես անդասակարգ հասարակարգի ստեղծման հիմնական երաշխիքի: Զարգացած սոցիալիզմի պայմաններում այդ դրույթը հենվում է երկու փոխադարձաբար իրար լրացնող պրոցեսների վրա:

Մի կողմից, գիտատեխնիկական հեղափոխության ծավալման և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման, սոցիալիստական սեփականության համաժողովրդական ու կոոպերատիվ ձևերի մերձեցման, աշխատանքի ու հանրային ունեցվածքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ձևավորմանը զուգընթաց, բանվոր դասակարգի սոցիալ-քաղաքական և բարոյական լավագույն հատկանիշները տարածվում են կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական ինտելիգենցիայի, աշխատավոր բնակչության բոլոր խավերում: Կուսակցության ջանքերը, ինչպես շեշտեց ՍՄԿԿ XXV համագումարը, անփոփոխ ուղղված են այն բանին, որ շարունակ աճի ու ամրապնդվի բանվոր դասակարգի ազդեցությունը մեր հասարակության կյանքի բոլոր ոլորտներում, որ նրա ակտիվությունն ու նախաձեռնությունը տան ավելի ու ավելի շատ բեղմնավոր արդյունքներ:

Մյուս կողմից, քանակական և որակական լուրջ փոփոխություններ են կատարվում հենց բանվոր դասակարգի կազմում. նա արդեն դարձել է ամենաբազմաքանակը սովետական հասարակության մեջ, աճում են նրա կրթվածությունը, որակավորումը, քաղաքական ակտիվությունը: Անհուսալիորեն հնացած ու սնանկ են թվում պատկերացումները ժամանակակից բանվորի մասին՝ որպես մի աշխատողի, որ, իբր, զբաղվում է միայն ֆիզիկական աշխատանքով: Առանց բանվոր դասակարգի՝ հասարակական առաջատար ուժի, գիտատեխնիկական առաջընթացի համար պայքարող ակտիվ մարտիկի, մասսայական գիտատեխնիկական ստեղծագործության սուբյեկտի անմիջական մասնակցության այժմ անհնար է ո՛չ միայն բազմապատկել երկրի նյութական հարստությունը, այլև ստեղծել նրա ինտելեկտուալ պոտենցիալը: Դրա շնորհիվ բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, որը սոցիալիստական կարգի հիմնարար սկզբունքն է, այժմ փաստորեն կազմում է մի անբաժան ամբողջություն սոցիալիզմի պայմաններում ձևավորված «գիտության, պրոլետարիատի ու տեխնիկայի ներկայացուցիչների» սերտ դաշինքի հետ, որի մասին երազում էր Լենինը (տե՛ս Երկեր, հ. 30, էջ 512): Այս երևույթի ընդհանրացումը կուսակցության կոլեկտիվ տեսական մտքի նվաճումներից մեկն է:

ՍՄԿԿ ծրագրում (1961 թվական) սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնության վերաբերյալ հայտնի ֆորմուլային ավելացրած է



մի դրույթ նրա սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնության մասին: 60-ական թվականների վերջի—70-ական թվականների սկզբի կուսակցական փաստաթղթերում սովետական ժողովուրդը բնորոշվում է որպես մարդկանց սկզբունքորեն նոր, ինտերնացիոնալ հանրություն, որպես ՍՍՀՄ բոլոր աշխատավորների՝ արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի աշխատողների, ֆիզիկական ու մտավոր աշխատանքի մարդկանց սոցիալիստական դաշինք, որը կազմում է բազմազգ համաժողովրդական պետության սոցիալական հիմքը: ՍՍՀՄ արհմիությունների XV համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառում առաջադրված է այն դրույթը, որ կոմունիստական շինարարության ներկա էտապում է՛լ ավելի խոր իմաստ է ստանում բանվոր դասակարգի դաշինքը կոլտնտեսային գյուղացիության և աշխատավոր ինտելիգենցիայի հետ, որի ցեմենտող ուժը մնում է բանվոր դասակարգը: Ցույց տալով, թե պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի կազմավորումը ինչ է նշանակում սոցիալ-քաղաքական հարաբերությունների ոլորտի համար, ընկեր Լ. Ի. Բրեժնևը Մոսկվայի Բաումանյան ընտրական օկրուգի աշխատավորների հետ ունեցած հանդիպման ժամանակ (1974 թվական) հայտարարեց, «որ բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, որը միշտ կազմել է սոցիալիստական հասարակարգի հիմքը, իր զարգացումն է գտել այդ դասակարգերի քաղաքական և գաղափարական անխախտ միասնության մեջ մտավորականության հետ, որը վաղուց և հաստատորեն կանգնած է սոցիալիզմի դիրքերում: Եվ այսօր մենք իրավունք ունենք բոլոր աշխատավորների, ֆիզիկական և մտավոր աշխատանք կատարողների, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության ամուր դաշինքի մասին խոսելու որպես մեր իրականության ռեալ փաստի մասին: Այդ դաշինքը, որտեղ առաջատար դերը պատկանում է բանվոր դասակարգին, ամուր է և անխորտակելի»:

Սրանք են ՍՄԿԿ XXV համագումարի տեսական կարևոր հետևության մի քանի գաղափարական նախադրյալները. «Մենք ելել ենք և ելնում ենք այն բանից, որ մեզ մոտ ստեղծվել է պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը, որի հիմքում ընկած է բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության անխախտ դաշինքը՝ բանվոր դասակարգի առաջատար դերի պայմաններում, երկրի բոլոր ազգերի ու ազգությունների բարեկամությունը»: Կուսակցությունն այսպես է պատկերացնում ժամանակակից փուլը, երբ մենք ընթանում ենք դեպի սովետական հասարակության սոցիալական միատարրություն, և երբ լուծվում է սոցիալական հավասարության հասնելու ծրագրային խնդիրը:

Այս կապակցությամբ հարկավոր է ավելի սևեռուն ուշադրություն նվիրել այն հնարավորություններին, որ սովետական հասարակության սոցիալական պրոցեսների հետազոտողների առջև բաց է անում հաստատուն կերպով կուսակցական փաստաթղթերի մեջ մտած՝ «նոր պատմական հանրություն՝ սովետական ժողովուրդ» հասկացության կիրառումը: Որպես կանոն, ՍՍՀՄ բնակչության սոցիալական կառուցվածքի շրջանակներում տեղի ունեցող ամեն ինչ մինչև այժմ դիտվում էր բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական ինտելիգենցիայի փոխհարաբերությունների էվոլյուցիայի, նրանց քանակական և որակական կազմի փոփոխությունների, նրանց զարգացման ու փոխադարձ մերձեցման պրոցեսների տեսանկյունից: Սակայն արդյունավետ է նաև մեկ այլ մոտեցումը՝ սոցիալական պրոցեսների այն վերլուծությունը, որն իրականացվում է ոչ թե մասնավորից դեպի ընդհանուրը, այլ ընդհակառակը, ընդհանրության այն գծերի տեսանկյունից, որն արդեն ձեռք է բերել սովետական ժողովուրդը՝ որպես ձևավորված սոցիալական ու ինտերնացիոնալ ամբողջություն (իսկ դրա շրջանակներում է հենց ձևավորվում անդասակարգ հասարակությունը), բանվոր դասակարգի լավագույն հատկություններին, նրա սոցիալիստական շահերին ու կոմունիստական իդեալներին համապատասխանող նրա հատկությունները խորացնելու և ամրապնդելու տեսանկյունից: Այստեղ անելիքներ շատ ունեն այն հասարակագետները, որոնք հետազոտում

են սոցիալիստական հասարակական հարաբերությունները կոմունիստա-
կանի վերածելու պրոբլեմները:

### IV

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ սովետական ժողովրդի մեծագործությունների,
սոցիալական կերպարի ու պատմական բախտի վերլուծության հետ սերտ
միասնության մեջ քննության առավ նաև լենինյան կուսակցության՝ բանվոր
դասակարգի, բոլոր աշխատավորների փորձված ավանգարդի, քաղաքական
առաջնորդի զարգացման հրատապ հարցերը: Խոսք եղավ կուսակցության աճի
ու համալրման աղբյուրների մասին, նրա որակական կազմի բարելավման,
կուսակցական շարքերի գաղափարական և կազմակերպական միասնության ամ-
րապնդման, կադրային քաղաքականության մասին: Կարևորագույն մոմենտը,
որ մատնանշեց համագումարը, այն է, որ զարգացած սոցիալիզմի պայման-
ներում, երբ կոմունիստական կուսակցությունը դարձել է ամբողջ ժողովրդի
կուսակցություն, նա ամենևին չի կորցրել իր դասակարգային բնույթը: Իր բնույ-
թով ՍՄԿԿ-ն եղել և մնում է որպես բանվոր դասակարգի կուսակցություն: Երի-
տասարդության հարաճուն առհոսքը դեպի նրա շարքերը ակնառու կերպով
ցույց է տալիս, որ կուսակցության կենսական ուժերն անսպառ են, որ մեր երի-
տասարդ սերունդը խորապես նվիրված է կոմունիստական իդեալներին: ՍՄԿԿ
թվակազմը երեսուն տարում աճել է մոտավորապես երեք անգամ: Կուսակցա-
կան շարքերի աճը շարունակվելու է: Կուսակցությունը սակայն չի արագացնում
այդ աճը: «Նա իր շարքերն է ընդունում միայն նրանց,— շեշտեց ընկեր Լ. Ի.
Բրեժնևը,— ովքեր գործով ապացուցել են, որ կուսակցության մեջ են մտնում,
լենինյան բառերով ասած, ոչ թե որևէ շահ ստանալու համար, այլ հանուն անձ-
նվեր աշխատանքի, հօգուտ կոմունիզմի»:

Ներկուսակցական դեմոկրատիայի հետևողական զարգացումը, յուրաքան-
չյուր կոմունիստի նկատմամբ պահանջկոտության բարձրացումը— լենինյան
այս սկզբունքներն այժմ էլ պահպանում են իրենց ամբողջ հրատապությունը:
«Կուսակցության ղեկավար, մոբիլիզացնող դերը,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի
հաշվետու զեկուցման մեջ,— վերացական հասկացություն չէ: Դա ինքը կյանքն
է, մեր ամբողջ առօրյա պրակտիկան»: Էկոնոմիկայի և կուլտուրայի զարգաց-
ման, մարդկանց դաստիարակության կուսակցական ղեկավարումն անընդհատ
բարձրացնելու, մասսաների մեջ տարվող կազմակերպչական ու քաղաքական
աշխատանքը բարելավելու պահանջը, որն առաջադրեց համագումարը, կարող է
կատարվել համապատասխան պայմանների առկայության դեպքում միայն:
Այդ պայմանների թվում որոշիչներից մեկը աշխատանքի լենինյան ոճի հաս-
տատումն է: Համագումարն այն բնորոշեց որպես «ստեղծագործական ոճ,
որին խորթ է սուբյեկտիվիզմը, բնորոշ է գիտական մոտեցումը բոլոր հասարա-
կական պրոցեսների նկատմամբ: Նա ենթադրում է բարձր պահանջկոտություն
իր և ուրիշների նկատմամբ, բացառում է ինքնագոհությունը, հակադրվում է
բյուրոկրատիզմի ու ձևամոլության ամեն տեսակ դրսևորումներին»: Որպես
լենինյան ոճի հատկանիշներ են ծառայում բոլշևիկյան վերաբերմունքը քննա-
դատությանն ու ինքնաքննադատությանը, ընդունված որոշումների կատարման
վերահսկողության ու ստուգման օրինակելի դրվածքը, կուսակցական աշխա-
տանքի ձևերի ու մեթոդների կատարելագործումը, մշտական դիմումը մասսա-
ների փորձին:

Մեծ տպավորություն է գործում ՍՄԿԿ գաղափարախոսական աշխատանքի
այն համայնապատկերը, որ ներկայացրեց XXV համագումարը. այդ աշխա-
տանքը, ինչպես և նրա ողջ հեղափոխական վերափոխիչ գործունեությունը, կա-
ռուցվում է մարքս-լենինյան տեսության՝ ճիշտ ստրատեգիայի ու տակտիկայի
մշակման համար այդ միակ հուսալի բազայի ամուր հիմքի վրա: «Մարքսիզմ-
լենինիզմի ուժը,— ասված է «ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը
և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքակնու-
թյան բնագավառում» փաստաթղթում,— մշտական ստեղծագործական զար-



գացումն է: Այդ է սովորեցրել Մարքսը: Այդ է սովորեցրել Լենինը: Նրանց
պատգամներին մեր կուսակցությունը միշտ հավատարիմ կլինի»:

Ինչպես շեշտեց XXV համագումարը, այժմ տեսության հետագա ստեղծա-
գործական պահանջը ոչ թե նվազում, այլ, ընդհակառակը, ավելի է մեծանում:
Համագումարը մատնանշեց, թե որտեղ կարելի է սպասել ամենից ավելի ար-
դյունավետ գիտական արդյունքներ. դրանք ինչպես հիմնարար, այնպես էլ կի-
րառական բնույթի հետազոտություններն են տարբեր գիտությունների, այդ
թվում բնական ու հասարակական գիտությունների սահմանագծերում:

Ինչպիսի՞ պրոբլեմներ է կուսակցությունն անհրաժեշտ համարում հետա-
զոտել: Դրանց թվին են պատկանում հետևյալ պրոբլեմները.

— արտադրության ու դրա կառավարման համակողմանի զարգացումը,
արդյունավետության բարձրացումը.

— աշխատանքի բնույթն ու բովանդակությունը հասուն սոցիալիզմի պայ-
մաններում.

— սովետական հասարակության սոցիալական կառուցվածքի փոփոխու-
թյունները.

— ըստ աշխատանքի բաշխման կատարելագործումը.

— դրա բարոյական և նյութական խթանման զուգակցումը.

— սոցիալիստական կենցաղը և մեր բազմակողմանի կուլտուրայի զար-
գացումը.

— մեր պետության զարգացումը.

— դաստիարակչական, գաղափարախոսական աշխատանքի ձևերն ու մե-
թոդները.

— հարձակողական պայքարը հակակոմունիզմի դեմ, բուրժուական և ռևի-
զիոնիստական տեսությունների քննադատությունը.

— հասարակական կարծիքի ուսումնասիրումը.

— շրջակա միջավայրը և ազգաբնակչությունը.

— համաշխարհային զարգացումը և միջազգային հարաբերությունները.

— հեղափոխական պրոցեսը, նրա տարբեր հոսանքների փոխգործողու-
թյունն ու միասնությունը.

— դեմոկրատիայի համար մղվող պայքարի հարաբերակցությունը սոցիա-
լիզմի համար մղվող պայքարի հետ.

— ուժերի հակամարտությունը պատերազմի ու խաղաղության հարցում.

— ՍՄԿԿ-ի, միջազգային կոմունիստական և բանվորական շարժման հա-
մաշխարհային-պատմական փորձի ընդհանրացումը:

Կուսակցությանը խորթ են սխոլաստիկական տեսական դատողություննե-
րը, վաղուց հայտնի փաստերի ծամծմումը, որ որոշ մասնագետներ փորձում են
հրամցնել որպես «լուրջ» գիտություն: Կոմունիստական շինարարության, աշ-
խարհի հեղափոխական վերափոխման կենդանի պրակտիկայի հետ սերտ կա-
պը միայն ունակ է բարձրացնելու գիտական հետազոտությունների արդյունա-
վետությունը: «Դոգմատիզմ չի կարող լինել այնտեղ,— ասում էր Լենինը մարք-
սիզմի էական գծերից մեկի մասին,— որտեղ դոկտրինայի գերագույն ու միակ
չափանիշը համարվում է նրա համապատասխանությունը հասարակական-տըն-
տեսական զարգացման իրական պրոցեսին...» (ԵԼԺ, հ. 1, էջ 374): Հասարակա-
կան երևույթների հետազոտման անողոք օբյեկտիվությունը, որի համար Լենինը
իբրև օրինակ էր համարում Մարքսի «Կապիտալը», գիտական կոմունիզմի մեջ
չի բացառում «սրտի» ներկայությունը, համախոհների ու զինակիցների նկատ-
մամբ բարյացակամ, ընկերական վերաբերմունքի միացումն իր դասակարգի և
իր կուսակցության սկզբունքային դիրքերի, շահերի ջերմ պաշտպանության
հետ՝ խորթ, հետամնաց կարծիքներ ու տրամադրություններ արտահայտող գա-
ղափարական հակառակորդների դեմ ունեցած բանավեճում: Այսօր, երեկվա
նման նույնքան կարևոր է գիտական աշխատանքում ստեղծագործական մթնո-
լորտ ստեղծելու խնդիրը, երբ այդ աշխատանքի պարտադիր նորմ է դառնում
կարծիքների ուշադիր, բանիմաց համադրումը, պրոբլեմների լայն քննարկումը,
որը, իհարկե, պետք է հիմնվի մեր ընդհանուր մարքս-լենինյան գաղափարա-

բարձր աստիճանի, քան պարզապես առևտրի զարգացումը։ Ծրագիրը նշանակում է, օրինակ, բնական ռեսուրսների համատեղ յուրացում ընդհանուր օգտի համար, նրա բոլոր մասնակիցների կարիքների բավարարման նպատակին ուղղված արդյունաբերական խոշոր կոմպլեքսների համատեղ շինարարություն, մեր երկրների ձեռնարկությունների և արդյունաբերության ամբողջ ճյուղերի՝ շատ տարիների համար պլանավորված կոոպերացում։ Կոմպլեքսային ծրագրի կատարման աշխատանքը հաստատեց այն բանին, որ արդեն այժմ զգալիորեն խորացել է մեր տնտեսական փոխգործողությունը, մեր երկրների էկոնոմիկաները ավելի մեծ չափով են միմյանց փոխլրացնում, որը փոքր օգուտ չի բերում նրանցից յուրաքանչյուրին»։

Հենց այդ նյութական բազայի վրա է հիմնվում միանգամայն որոշակիորեն դրսևորված այն օրինաչափությունը, որի գլխավոր հատկանիշների մասին նշեց ՍՄԿԿ XXV համագումարը։ Դա արտահայտվում է այն բանում, որ գնալով ավելի սերտ են դառնում սոցիալիստական պետությունների փոխադարձ կապերը, ընդհանրության ավելի ու ավելի շատ տարրեր են առաջանում նրանց քաղաքականության, էկոնոմիկայի մեջ, սոցիալական կյանքում, տեղի է ունենում զարգացման մակարդակների հավասարեցում՝ մի խոսքով, նկատվում է նրանց աստիճանական մերձեցում։

Տասնամյակների փորձը ցույց է տվել, թե որքան արդյունավետ են սոցիալիստական երկրների միացյալ ջանքերը ինչպես նրանց հեղափոխական նվաճումների պաշտպանության, այնպես էլ տնտեսական և կուլտուրական շինարարության, միջազգային անվտանգության ամրապնդման գործում։ Բոլոր մայրցամաքների ժողովուրդներն այդ բանում համոզվեցին նաև խաղաղության ծրագրի օրինակով, որ առաջադրել է ՍՄԿԿ XXIV համագումարը և որը դրվել է եղբայրական պետությունների համաձայնեցված արտաքին քաղաքական գծի հիմքում։

Որպես մեծ մասամբ արդեն իրագործված այդ ծրագրի օրգանական շարունակություն և զարգացում, XXV համագումարը առաջարկեց խաղաղության և միջազգային համագործակցության համար, ժողովուրդների ազատության և անկախության համար հետագա պայքարի ծրագիրը։ 1917 թվականի հոկտեմբերին առաջին անգամ իշխանության գլուխ անցած բանվոր դասակարգի ակտիվ ներգրավումը միջազգային քաղաքականության մեջ այժմ հարուստ պտուղներ է տալիս, նրա ներգործությամբ տեղի է ունենում միջպետական հարաբերությունների՝ անցյալում չտեսնված լայն դեմոկրատացում, հաջողվում է զսպել ռեակցիայի ու պատերազմի ուժերը։ Իրականանում է հաշտության մասին պատմական դեկրետի մեջ Լենինի արտահայտած այն կանխագուշակումը, որ «բանվորական շարժումը կհաղթանակի և ճանապարհ կբանա դեպի հաշտություն ու սոցիալիզմ» (Երկեր, հ. 26, էջ 301)։

Սոցիալիզմը համաշխարհային բանվոր դասակարգի, նրա երկարատև պայքարի ու ստեղծարար ջանքերի, հեղափոխական, մարքս-լենինյան ուսմունքի կենսագործման, եղբայրական կուսակցությունների քաղաքական վարպետության գերագույն նվաճումն է։ Այն անբաժան է միջազգային կոմունիստական շարժումից, որի թվակազմը միայն կապիտալիստական աշխարհում հինգ տարում աճել է գրեթե մեկ միլիոն մարդով։ Աճում է այն ընտրողների թիվը, որոնք կապիտալի երկրներում ընտրությունների ժամանակ քվեարկում են կոմունիստների օգտին, սեփական աշխատուժը վաճառելու հաշվին ապրող ֆիզիկական ու մտավոր աշխատանքի ավելի ու ավելի մեծ թվով մարդիկ կոմունիստների մեջ տեսնում են իրենց արմատական շահերի արտահայտիչներին ու պաշտպաններին։ ՍՄԿԿ XXV համագումարը նշեց կոմկուսակցությունների ընդհանուր հաջողությունները, որոնք արտահայտվել են նախ և առաջ այն բանում, որ շատ կետերով կատարվել է 1969 թվականին աշխարհի կոմունիստների խորհրդակցությունում առաջ քաշված հակաիմպերիալիստական գործողությունների ծրագիրը։ Խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալական պրոգրեսի համար պայքարող մարտիկների համատեղ ջանքերը լայն արձագանք են գտնում մասսաների շրջանում, տալիս օգտակար արդյունքներ։



Մոնոպոլիաների գաղափարական սպասարկուներն ու նրանց կամակատարները կցանկանային միջազգային կոմունիստական շարժման հուժկու հոսանքը տեսնել ցրված, կազմալուծված, ուժը կորցրած։ Չի կարելի ասել, թե ռեակցիայի ասնձգությունները այս տեսակետից միշտ ու ամենուրեք վճռական հակահարված են ստանում, լինում է և այնպես, որ հանդուրժողականությունը նրանց նկատմամբ արդարացվում է այս կամ այն երկրի ազգային սպեցիֆիկան, կոնկրետ պատմական իրավիճակը հաշվի առնելու անհրաժեշտությամբ։ Բանը, սակայն, այն չէ, որ հեղափոխական հոսանքն իր ամբողջ լայնությամբ ու երկարությամբ հանդես գա միանգամայն միատեսակ ու տարածվի միայն ուղիղ գծով,— նման հոսանքներ բնության մեջ պարզապես չեն կարող լինել,— այլ այն, որ այն ոչ միայն չկտորակվի ու չսպառվի, այլ, ընդհակառակը, շարունակ համալրվի հակակապիտալիստական ժողովրդական նախաձեռնության նորանոր աղբյուրներով. այնուհետև, բանն այն է, որ նա շարունակի զարգանալ որոշակի, պատմականորեն օրինաչափ ուղղությամբ, դրանով իսկ արդարացնելով մարդկության հույսերը՝ ազատվելու «սառը» պատերազմի սառեցնող հովերից ու «տաք» պատերազմի մղձավանջից, շահագործողական սիստեմի ճրնշումից և մասնավոր սեփականատիրական տարերքի կամայականությունից։

«Տարբեր երկրների կոմունիստները հետաքրքրությամբ և հասկանալի ուշադրությամբ են հետևում միմյանց աշխատանքին,— նշվում է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ։— Նրանց միջև երբեմն կարող է առաջանալ կարծիքների, այս կամ այն հարցին ցույց տրվող մոտեցումների տարբերություն։ Թշնամական պրոպագանդան բազմիցս այդ առթիվ սենսացիաներ է սարքել։ Բայց մարքսիստ-լենինյաններն այդ հարցերին մոտենում են ինտերնացիոնալիզմի դիրքերից, հոգ տանելով ամբողջ շարժման միասնության ամրապնդման մասին, ծագող պրոբլեմները քննարկում են իսկական ընկերականության ոգով, յուրաքանչյուր կուսակցության իրավահավասարության և ինքնուրույնության հարգման անխախտ նորմերի շրջանակներում։ Իհարկե, այստեղ խոսքը չի վերաբերում և չի կարող վերաբերել սկզբունքային գործերում կոմպրոմիսներին, կոմունիստական գաղափարախոսությանը հակասող հայացքների և գործողությունների հետ հաշտվելուն։ Դա բացառված է։ Մանավանդ որ թե՛ աջ և թե՛ «ձախ» ռևիզիոնիզմն ամենևին էլ անգործության չի մատնված, և կոմունիստական շարժման մարքս-լենինյան հիմքերի համար դրանք խեղաթյուրելու կամ խարխլելու փորձերի դեմ մղվող պայքարը մնում է բոլորի ընդհանուր խնդիրը»։

Գիտակցելով բանվոր դասակարգի՝ որպես նոր հասարակարգի ստեղծողի պատմական միսիան և իրենց՝ որպես նրա առաջավոր կազմակերպված ջոկատի անդամների, պարտականությունները, կոմունիստներն իրենց գործողություններում ղեկավարվում են հեղափոխական գիտության հայտնագործած և հեղափոխական պրակտիկայով հաստատված՝ դասակարգային պայքարի, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու, սոցիալիստական և կոմունիստական շինարարության ընդհանուր օրինաչափություններով։ Հեղափոխական պարտքը նրանց պարտավորեցնում է՝ «...պատմության այդ զիգզագներում, այդ ոլորտներում չկորչել, պահպանել ընդհանուր հեռանկարը, ...տեսնել այն կարմիր թելը, որը կապում է կապիտալիզմի ամբողջ զարգացումը և դեպի սոցիալիզմ տանող ամբողջ ճանապարհը, որը մեզ, բնականաբար, ուղիղ է պատկերանում, և մենք պետք է այն պատկերացնենք ուղիղ, որպեսզի տեսնենք սկիզբը, շարունակությունը և վերջը,— կյանքում այն երբեք ուղիղ չի լինի, այն աներևակայելի չափով բարդ կլինի...» (Վ. Ի. Լենին, հ. 27, էջ 143)։ Հեղափոխության, սոցիալիզմի ու կոմունիզմի շինարարության ընդհանուր օրինաչափությունների վրա մշտապես հիմնվելը, ընդհանուր հեռանկարի ըմբռնումը և այդ օրինաչափությունների ստեղծագործական կոնկրետացումը ռեալ ազգային հողի նկատմամբ, լավագույն հեղափոխական գծի մշակման նպատակով տվյալ երկրի կուլտուր-պատմական առանձնահատկությունների առավելագույն չափով հաշվառումը— այս ամենը XXV համագումարը դիտում էր որպես մեր համերաշխ ինտերնացիոնալ ջանքերի հաջողության անհրաժեշտ զումարելիներ։

— Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք. այս մարտական կոչը հռչակված է «Կոմունիստական կուսակցության մանիֆեստ»-ում, որ Մարքսը և Էնգելսը գրել էին իրենց ստեղծած Կոմունիստների միության համար։

— Մենք՝ սովետական կոմունիստներս, պրոլետարական ինտերնացիոնալիզմի պաշտպանությունը համարում ենք յուրաքանչյուր մարքսիստ-լենինյանի սրբազան պարտականությունը,— ասված է կուսակցության XXV համագումարին տրված՝ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ։

Գիտական կոմունիզմի հիմնադիրների և կոմունիստական հասարակարգի կառուցողների այս փոխկանչը վկայում է մեր արդար գործի անմահության, նրա լիակատար ու համատարած հաղթանակի անխուսափելիության մասին։ «Կոմունիստական կուսակցության մանիֆեստի», ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի ոգին հսկայական ուժով արտացոլվել է «ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում» պատմական փաստաթղթում՝ մեր ժամանակի տեսական ու քաղաքական այդ նշանավոր փաստաթղթում։ Զարգացած սոցիալիզմի այդ մանիֆեստի շնորհիվ, Համամիութենական Պատվո տախտակի բացման ժամանակ ընդգծեց ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամ, Կենտկոմի քարտուղար ընկեր Ա. Պ. Կիրիլենկոն, «գիտական կոմունիզմի տեսությունն ու պրակտիկան հարստացան նոր դրույթներով ու հետևություններով, առանց որոնց այսուհետև անհնար է պատկերացնել կոմունիստների ժամանակակից գաղափարական-քաղաքական զինանոցը»։

Մարքսիզմ-լենինիզմը՝ մարդկային մտքի և կուլտուրայի այդ բարձրագույն նվաճումը, ամբողջական հեղափոխական գիտությունը սովետական կոմունիստներին, մեր ամբողջ ժողովրդին զինում է ստեղծագործական կանխատեսության ունակությամբ։ Սովետական մարդիկ վստահորեն են նայում ապագային։ Նրանք արտասահմանյան բոլոր քննադատներից ավելի լավ են տեսնում իրենց պրոբլեմներն ու դժվարությունները, հաստատ իմանալով, որ իրենց ընտրած ճանապարհը ճշմարտության ճանապարհն է, ազատության ճանապարհը, ժողովրդական երջանկության ճանապարհը։ Կոմունիզմի պատմական մայրուղին։

«Коммунист», № 7, 1976 г.

# ՈՒԺԵՂԱՑՆԵԼ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅՈՒՆԸ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ պատմական մեծ իրադարձություն էր մեր բազմազգ սոցիալիստական հայրենիքի կյանքում։ Այն հանրագումարի բերեց լենինյան կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովրդի կատարած վիթխարի աշխատանքի արդյունքները, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման և երկրի անվտանգության ապահովման գործում նրա մեծ նվաճումները։ Կուսակցության համագումարը միաժամանակ ընդունեց պատմական կարևորագույն որոշումներ, որոնք կանխագծում են կոմունիստական հասարակարգի կառուցման համար մեր ժողովրդի հետագա պայքարի ստրատեգիան ու տակտիկան։

Ջերմորեն և միահամուռ հավանություն տալով ՍՄԿԿ XXV համագումարի մշակած ներքին ու արտաքին քաղաքականության կուրսին, ՍՄԿԿ Կենտկոմի, նրա Քաղբյուրոյի, Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի բազմակողմանի և անխոնջ գործունեությանը, սովետական ժողովուրդն իր բոլոր ջանքերը գործադրում է կուսակցության նոր վիթխարի կանխագծումները կենսագործելու, տասներորդ հնգամյակի առաջադրանքները կատարելու համար։

Մեր հայրենիքի է՛լ ավելի բարգավաճման համար մղվող համաժողովրդական պայքարի ավանգարդում, ինչպես միշտ, ընթանում է կոմունիստների հզոր բանակը՝ իր հետևից տանելով բազմամիլիոն աշխատավորական զանգվածներ։ Երկրի գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, տրանսպորտում և կառույցներում, գիտական և այլ հիմնարկություններում ավելի ու ավելի է ծավալվում աշխատավորների սոցիալիստական մրցությունը՝ նոր հնգամյակի առաջադրանքների կատարումն ու գերակատարումն ապահովելու համար։

Կուսակցության կանխագծումների իրականացման ասպարեզում արժանի ավանդ են ներդնում նաև Սովետական Հայաստանի աշխատավորները, այդ թվում և հանրապետության շինարարների հոծ բանակը։

Հայկական ՍՍՀ-ում, ինչպես և ողջ երկրում, իրականացված է շինարարական մեծ ծավալի աշխատանք, որը կարևոր դեր է խաղում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման և բնակչության բարեկեցության անշեղ բարձրացման գործում։ Շինարարության լայն ծավալումը նպաստեց այն բանին, որ մեր հանրապետությունը սովետական իշխանության տարիներին հիմնովին կերպարանափոխվեց, վեր բարձրացան տասնյակ նոր քաղաքներ ու գյուղեր, Հայաստանը դարձավ բարձր զարգացած ժամանակակից արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի ու գիտության հանրապետություն։ Մեզ մոտ ստեղծված է շինարարական ինդուստրիայի հզոր բազա, աճել են շինարարների հիանալի կադրեր, որոնք ընդունակ են լուծելու խոշոր մասշտաբների խնդիրներ։

Լենինյան կուսակցության ու սովետական կառավարության ազգային իմաստուն քաղաքականության և մշտական հոգատարության շնորհիվ մեր

ման գործում եղած ամեն տեսակի թերությունների, կուսակցական և պետական կարգապահության խախտումների, հավելագրումների, պետական միջոցների շռայլումների՝ դեռևս գոյություն ունեցող փաստերի և այլ խախտումների դեմ մղվող պայքարում։

Շատ կառույցների կուսկազմակերպությունների աշխատանքներում եղած թերություններն այն բանի հետևանք են, որ ՀԿԿ որոշ շրջանային և քաղաքային կոմիտեներ դեռևս անհրաժեշտ հետևություն չեն արել Հայաստանի կոմկուսի XXVI համագումարում իրենց հասցեին արված քննադատությունից և շարունակում են հաշտվել շինարարական ծրագրի թերակատարումների հետ։ Նրանք չեն խորանում կառույցների գործերի մեջ, հստակ ուղղություն չեն տալիս շինարարական և մոնտաժային վարչությունների կուսակցական կոմիտեներին ու սկզբնական կազմակերպություններին, քիչ են օգնում կոլեկտիվներում նրանց ամենօրյա գործունեությանը, միշտ չէ, որ պատշաճ սկզբունքայնություն են ցուցաբերում շինարարական կազմակերպություններում կադրերի ընտրության ու տեղաբաշխման հարցերում։

Կուսակցության քաղկոմների և շրջկոմների, շինարարական և մոնտաժային տրեստների ու վարչությունների կուսակցական կոմիտեների և սկզբնական կազմակերպությունների խնդիրն է՝ վճռականապես բարելավել աշխատավորների մեջ տարվող կազմակերպական և գաղափարական-դաստիարակչական աշխատանքը, այն սերտորեն կապելով աշխատանքային կոլեկտիվների կոնկրետ առաջադրանքների կենսագործման հետ և ապահովելով կապիտալ շինարարության վերաբերյալ պետական պլանների ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարումը։ Անհրաժեշտ է բարելավել վերահսկողությունն ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ, բարձրացնել ղեկավար կադրերի պահանջկոտությունն ու պատասխանատվությունը, ուժեղացնել կոմունիստների ավանգարդային դերը կառույցներում։ Կուսակցական ժողովներում, բյուրոների ու կուսկոմիտեների նիստերում անհրաժեշտ է պարբերաբար քննարկել գործերի իրավիճակը շինարարական տեղամասերում, պետք է հետևողականորեն բարձրացնել կուսակցական և բանվորական ժողովների դերն ու նշանակությունը թերությունները բացահայտելու և վերացնելու գործում, լայնորեն ծավալել սկզբունքային քննադատությունն ու ինքնաքննադատությունը՝ դրանք նպատակամղելով արտադրական, կուսակցական և պետական կարգապահության խախտումների, անտնտեսվարության ու շռայլումների դեմ։

Առանձին կառույցների ետ մնալը հաղթահարելու գործում էական օգնություն կարող են ցույց տալ արդյունաբերական ձեռնարկություններն ու ուսանողական շինարարական ջոկատները։ Կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեները, շինարարական և մոնտաժային վարչությունների կուսակցական կազմակերպությունները պետք է պաշտպանեն ու տարածեն առաջավոր ձեռնարկությունների, կազմակերպությունների և ուսանողների արժեքավոր նախաձեռնությունը՝ շինարարներին օգնություն ցույց տալու գործում։

Շինարարական և մոնտաժային տրեստների ու վարչությունների կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները պետք է է՛լ ավելի ծավալեն գործուն սոցիալիստական մրցությունը կոլեկտիվների ու առանձին բանվորների միջև՝ պլաններն անպայման կատարելու և գերակատարելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, շինարարության որակը բարելավելու, ժամկետները կրճատելու համար։

Անհրաժեշտ է, որպեսզի պատվիրատու մինիստրությունների, գերատեսչությունների և ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունները վերահսկողություն սահմանեն այն բոլոր խնդիրների օպերատիվ լուծման նկատմամբ, որոնք կապված են ներգերատեսչական կառույցները նախագծանախահաշվային փաստաթղթերով, սարքավորմամբ ու ֆինանսավորմամբ ժամանակին ապահովելու, հողամասեր հատկացնելու, տեխնիկական հսկողությունը բարելավելու և նման այլ հարցերի հետ։



Նախագծային ինստիտուտների կուսակցական կազմակերպությունները պետք է պայքարեն այնպիսի միջոցառումների մշակման և կենսագործման համար, որոնք վերաբերում են նախագծումների ասպարեզում եղած թերությունների վերացմանը, և հասնեն այն բանին, որպեսզի կառույցներին ժամանակին տրվեն բարձրորակ նախագծեր ու նախահաշիվներ։

Արմատացած թերությունների վերացումը և կապիտալ շինարարության վիճակի վճռական բարելավումը կարևոր գործ է ո՛չ միայն շինարարական ու մոնտաժային կազմակերպությունների համար. այն առաջնահերթ նշանակություն ունի հանրապետության բոլոր մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների համար։ Ներկայումս ընդհանուր նշանաբան պետք է դառնա՝ «Բոլորս օգնենք շինարարներին» լոզունգը։ Շինարարական կազմակերպություններին բարձր պահանջներ ներկայացնելու հետ մեկտեղ, հարկավոր է անհրաժեշտ օգնություն ցույց տալ նրանց, ամենակարճ ժամկետում լուծել այն բոլոր հարցերը, որոնք կապված են շինարարության հետ։ Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները պետք է շինարարությանը համընդհանուր աջակցության մթնոլորտ ստեղծեն։

ՍՄԿԿ XXV համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Կառուցել արագ, խնայողաբար և ժամանակակից տեխնիկական հիմքի վրա՝ ահա կապիտալ շինարարության մեջ բարձր արդյունավետության գումարելիները։ Եվ մենք համոզված ենք, որ շինարարների բազմամիլիոնանոց բանակը կաշխատի հենց այդպես» (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 75)։

Կասկած չկա, որ Սովետական Հայաստանի կուսակցական կազմակերպությունները կձեռնարկեն բոլոր միջոցները՝ աշխատավոր մասսաներին մոբիլիզացնելու, հանրապետության շինարարական ու մոնտաժային կազմակերպությունների աշխատանքները վճռականապես բարելավելու, որակական ու քանակական բոլոր ցուցանիշներով կապիտալ շինարարության միթխարի ծրագրի անշեղ կենսագործումն ապահովելու համար։

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ՀՈՒՄԱՆԻՍՏԱԿԱՆ ԲՆՈՒՅԹԸ

**Բ. Տ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
ՍՍՀՄ ԳԱ փիլիսոփայության ինստիտուտի սեկտորի վարիչ,
փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ կուսակցության և ժողովրդի ստեղծարար գործունեության ծրագիրը, որ նշեց ՍՄԿԿ XXV համագումարը, մարքսիզմ-լենինիզմի հումանիստական էության, մեր երկրի սոցիալիստական պրակտիկայի նոր վառ վկայությունն է, կոմունիստական տեսության ու պրակտիկայի օրգանական միասնության նոր դրսևորումը։ Կուսակցության կանխանշած բոլոր միջոցառումների (սկսած խաղաղության և միջազգային համագործակցության քաղաքականության հետագա իրականացման խնդիրներից ու վերջացրած տնտեսական շինարարության կոնկրետ պլաններով) գլխավոր նպատակը մարդն է, նրա բարօրությունը, նրա համակողմանի զարգացումը։

Մարդը, նրա սոցիալական ու հոգևոր ազատության, նրա նյութական և կուլտուրական պահանջմունքների լավագույն ու արդարացի բավարարման, նրա ներդաշնակ զարգացման պրոբլեմն այսօր գտնվում են պատմական այն մեծ վեճի ուշադրության կենտրոնում, որ իրար դեմ վարում են կապիտալիզմն ու սոցիալիզմը, բուրժուական և կոմունիստական գաղափարախոսությունները։ Հենց այստեղ՝ մարդկային գոյության արմատական պրոբլեմների տեսական ու պրակտիկ լուծման մեջ են առաջին հերթին բախվում համաշխարհային երկու սիստեմները, նրանց առաջադրած սոցիալ-փիլիսոփայական ալտեռնատիվները։ Վերջին հաշվով, վեճն այն մասին է, թե գոյություն ունեցող սիստեմներից որն է ավելի լավ ու առավելագույն հնարավորություններ ստեղծում մարդու համակողմանի զարգացման, նրա երջանկության ու բարեկեցության համար։ Այդ կապակցությամբ սուր բանավեճ է գնում նաև այն հարցի շուրջը, թե ո՛ր փիլիսոփայությունն է իրոք ծառայում մարդու և սոցիալական առաջընթացի շահերին, ո՛ր փիլիսոփայությունն է վստահելի ու գործուն տեսական միջոց հանդիսանում ժամանակակից մարդկության բարդ ու դժվարին պրոբլեմների լուծման համար։

Կապիտալիստական հասարակարգի կենսական պրոբլեմներն ու հակասությունները, որոնք արտասովոր կերպով բարդացել ու սրվել են մեր դարաշրջանում տեղի ունեցող սոցիալական արմատական փոփոխությունների և գիտատեխնիկական հեղափոխության հետևանքների կապակցությամբ, իրենց արտացոլումն են գտել բուրժուական փիլիսոփայության մեջ։ Արձագանքելով այդ հասարակարգում մարդկային կյանքի գոյություն ունեցող ձևերի օտարացման, ապահումանիզացման ու ստանդարտացման պրոցեսներին, բուրժուական փի-



լիսոփաները զարգացնում են զանազան կոնցեպցիաներ, որոնք, իբր, կոչված են ծառայելու մարդու ազատագրմանը գոյության այդ օտարացված ձևերից, նշելու իսկական մարդկային կեցության հասնելու ուղիներն ու միջոցները։ Էկզիստենցիալիզմի, փիլիսոփայական մարդաբանության և պերսոնալիզմի որոշ ներկայացուցիչներ իրենց ուսմունքները հրամցնում են նույնիսկ որպես մարդու հատուկ փիլիսոփայություն։ Եվ եթե մարդու մասին բացահայտ ջատագովական բուրժուական ուսմունքները (օբյեկտիվ իդեալիստական, տեխնոկրատական երանգի) ճգնում են ապացուցել կապիտալիզմի պոտենցիաների «անսահմանափակությունը» և ենթադրում մարդկային պրոբլեմների լավագույն լուծումը նրա հետագա զարգացման ու առաջադիմության ընթացքում, ապա մարդաբանական-հումանիստական ուղղության լիբերալ-բուրժուական փիլիսոփայությունը, որը հաճախ խիստ քննադատում է ժամանակակից կապիտալիստական աշխարհը՝ որպես մարդուն խորթ ու թշնամի աշխարհ, կոչ է անում վերադառնալ վաղնջական (նահապետական, վաղ բուրժուական) մարդկային կեցության ինչ-որ «ներդաշնակ» ու «չօտարացված» ձևերին կամ բավարարվել մարդկային հոգու անհատական փրկության յուրատեսակ քարոզով։ Բայց թե՛ մեկ և թե՛ մյուս բուրժուական կոնցեպցիաները երևան են բերում թշնամական կամ կանխակալ վերաբերմունք դեպի մարքսիզմը, դեպի կոմունիստական սոցիալական իդեալը, չեն ընդունում սոցիալիզմը որպես մարդկության հասարակական կյանքի նոր, ավելի բարձր ձև և այդ կապակցությամբ մերժում են սոցիալիզմի մարքսիստական-փիլիսոփայական հիմնավորումը։ Ավելին, բուրժուական գաղափարախոսներն ակտիվ պրոպագանդիստական գործողություններ են ձեռնարկում՝ մարքսիզմը ներկայացնելու իբրև մի այնպիսի փիլիսոփայական ուսմունք, որը զուրկ է հումանիստական պրոբլեմատիկայից, անտեսում է մարդու շահերը, նրան ենթարկում է բնության ու հասարակության օբյեկտիվ անհրաժեշտությանը։ Այդ նպատակով տարբեր կարգի տեսական մարզանքներ են կատարում մարքսիզմը, նրա դիալեկտիկական-մատերիալիստական փիլիսոփայությունը անդամահատելու, երիտասարդ «հումանիստ Մարքսին» «հասուն, ոչ հումանիստ Մարքսին» հակադրելու, մարքսիզմն ու լենինիզմը սկզբունքորեն իրարից տարբերակելու համար և այլն։

Այդ պայմաններում առանձնահատուկ հրատապություն է ձեռք բերում մարքսիստական փիլիսոփայական ուսմունքի ամբողջական ու մոնիստական բնույթի պաշտպանությունը, դրա հումանիստական էության տեսական հիմնավորումը, այն հիմնարար սկզբունքների պարզաբանումը, որոնցով տոգորված է մարքսիստական աշխարհըմբռնման ողջ սիստեմը և որոնք որոշում են դրա հումանիզմն ու վիթխարի պրակտիկ նշանակությունը մարդկային գոյության կարևորագույն պրոբլեմների լուծման համար։

ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆԸ ծագել է որպես հեղափոխական գործողության տեսություն, որպես աշխարհի պրակտիկ վերակառուցման, մարդու հիմնական պրոբլեմների արմատական լուծման ուղեցույց։ Կապիտալիստական հասարակության կողմից ստրկացված կենդանի կոնկրետ մարդն իր շահերով, ձգտումներով և հույսերով հենց սկզբից էլ գտնվել է մարքսիզմի ուշադրության կենտրոնում, եղել նրա ելակետը։ Մարքսիզմը պատմական ասպարեզ է եկել որպես փիլիսոփայական բողոք կապիտալիզմի կողմից մարդու օտարացման դեմ, նրան առուծախի առարկա, իրերի մեջ իր դարձնելու դեմ, մարդկային անհատի ապահումանիզացման ու համահարթման դեմ։ Սակայն, ի տարբերություն իրենց ժամանակի բուրժուական մտածողների, Մարքսը և Էնգելսը մարդուն դիտում էին ոչ թե իբրև մի մեկուսացած, ինքն իր մեջ ներփակված հոգևոր մոնադ կամ առանձին զգայական, բնական ինդիվիդ, այլ որպես կոնկրետ-պատմական մարդու, որն օրգանապես ընդգրկվել է ողջ իրականության հարաբերությունների մեջ, որպես հասարակական մարդու, որոշակի դասակարգի ներկայացուցչի, որպես մի էակի, որն իր զարգացման ընթացքում պահպանվում է հասարակության կողմից և միաժամանակ կեղեքվում ու ճնշվում է նրա օտարացված ուժերի կողմից։ Այստեղից էլ, որպես մարդու

Պատմական մոնիզմի իր կոնցեպցիայում Մարքսը բնությունը հասկանում է ոչ թե որպես մարդկային գոյության աբստրակտ-նյութական, օբյեկտիվ նախադրյալ, այլ որպես միակ ռեալությունը, որը ներգրավվել է հասարակական-պատմական պրակտիկայի ոլորտը։ Այդ հիմքի վրա էլ կառուցված է մարքսիստական փիլիսոփայության կարևորագույն դրույթներից մեկը, ըստ որի արդյունաբերությունը, նյութական արտադրության ոլորտը հասարակական կեցության հենց այն բնագավառն է, որտեղ ամենից առաջ դրսևորվում է ինչպես մարդու պրակտիկ հարաբերությունը աշխարհի, այնպես էլ բնության իրոք պատմական հարաբերությունը մարդու նկատմամբ, որտեղ բնական ուժերը դադարում են զուտ այդպիսին լինելուց և դառնում են սոցիալական զարգացման որոշիչ գործոն, ոչ թե անդրաշխարհային, այլ իսկական պատմական ու մարդկային ռեալություն։

«...Բնությունը, ինչ որ այն դառնում է արդյունաբերության շնորհիվ, թեկուզ և օտարացված ձևով, իսկական մարդաբանական բնություն է» (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произв., стр. 596)։ Արտադրաուժերի, կապիտալների և սոցիալական ձևերի այն գումարը, որ յուրաքանչյուր անհատ և յուրաքանչյուր սերունդ ստանում է իբրև ինչ-որ մի տրված բան, այն ռեալ հիմքն է, որ փիլիսոփաները պատկերացրել են որպես «մարդու էություն», աստվածացրել այն ու պայքարել դրա դեմ։ Բայց այդ ռեալ հիմքը գերբնական և զուտ բնական հիմքից տարբերվում է նրանով, որ այն ոչ թե աշխարհից դուրս և աշխարհից վեր կանգնած ինչ-որ մի նախապատմական բան է, այլ մի իսկական պատմական փաստ, որի գոյությունն անհնար է մարդկանցից դուրս ու առանց նրանց (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 37)։

Նյութական արտադրության, մարդու աշխատանքային գործունեության պրոցեսում, որի նպատակը գոյության միջոցներ արտադրելն է, մարքսիզմը տեսնում է սոցիալական կյանքի այն առաջնային ոլորտը, որտեղ իրականանում է բնության դիալեկտիկայի կերպափոխումը մարդկության կուլտուր-պատմական կյանքի դիալեկտիկայի։ Բնության օբյեկտիվ անհրաժեշտությունը նրա պատմական այդ ձևում հանդես է բերում իր օրգանական կապն ու կախվածությունը մարդու ազատ և նպատակահարմար գործունեությունից։ Մարքսիզմը շեշտում է մեզ շրջապատող իրականության սոցիալական, մարդկային բնույթը, ցույց տալիս, որ մարդկությունը պրակտիկ կերպով գործ ունի «արհեստական բնության» հետ, որը, չնայած իր օբյեկտիվ աղբյուրներին, նրա սեփական ստեղծագործությունն է։

Պատմական մոնիզմի կոնցեպցիայում մարքսիզմը հաղթահարում է ո՛չ միայն պատմության ու մարդու օբյեկտիվիստական «բնականացումը», այլև ժամանակակից բուրժուական սուբյեկտիվիստական փիլիսոփայությանը բնորոշ՝ բնության էական նշանակության ժխտումը մարդկային կեցության համար։ Բնությունը դիտելով պատմականորեն՝ նրա սոցիալական կերպափոխումների մեջ, մարքսիզմը բացահայտեց ողջ իրականությունն ըմբռնելու, այն հասկանալու նոր ասպեկտ. բնական իրականությունը՝ սոցիալական ու պատմական տեսանկյունից, սոցիալականը՝ կոնկրետ մարդու, հեղափոխական դասակարգի, նրա պրակտիկայի տեսանկյունից։

ԵԹԵ ԲՆԱԿԱՆ ԻՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ չի կարելի հասկանալ պատմությունից դուրս, ապա պատմությունը և սոցիալական իրականությունը առավել ևս չի կարելի անջատել մարդուց, հասարակական-պատմական զարգացման բուն սուբյեկտից ու կրողից։ Հասարակությունն իր տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական ձևերով մարդուց ու նրա գործունեությունից անկախ մի ինչ-որ ինքնաբավ ամբողջություն չէ, այլ մարդկանց հենց պրակտիկ գործունեության հարաբերությունների ու ձևերի մի որոշակի ամբողջություն է։ Մարքսիզմը ելնում է ոչ թե վերացական մարդկային անհատներից և ոչ թե անդեմ հասարակական օրգանիզմից, այլ հասարակությունից՝ որպես մարդկային հարաբերությունների կոնկրետ-պատմական սիստեմի։ Մարդկանց պրակտիկ գործ-



ծունեության պրոցեսում է իրականանում ներքին էական կապը հասարակության և մարդու միջև, դրսևորվում նրանց փոխադարձ կախվածությունը։

Կուլտուր-պատմական զարգացման յուրաքանչյուր կոնկրետ փուլում մարդն իր գոյության համար գտնում է արդեն ինչ-որ պատրաստի ելակետային պայմաններ, հասարակական ու կուլտուրական միջավայր։ Սկզբնապես նա ներկայանում է իբրև այդ միջավայրի արդյունք, որը որոշակի չափով կանխորոշում է նրա գործունեությունը, ուղղություն տալիս, և հետագայում միայն նա հանդես է բերում իր ստեղծագործական ակտիվությունը, սոցիալական իրականությունը վերափոխելով իր համար անհրաժեշտ ուղղությամբ։ Ընդսմին, իր գործունեությունը մարդը հիմնում է այն արտադրաուժերի, գիտելիքների և կուլտուրական արժեքների վրա, որոնք զարգացել ու կուտակվել են նախորդ սերունդների կողմից։ Նրա գործունեության տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական նախադրյալներն այստեղ հանդես են գալիս և որպես ավանդույթի պահպանողական ուժեր, որոնք կաշկանդում են նրա ազատությունն ու ստեղծագործական ակտիվությունը, և որպես նրա ինքնատիպ ու առաջադիմական ստեղծագործության ռեալ հիմք, որը նորանոր հորիզոններ է բացում հետագա սոցիալական ու բարոյական զարգացման համար։ Հասարակական կյանքի օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների փոխհարաբերությունների տրամաբանությունը, ինչպես նաև նրա հետագա վերափոխման ու կատարելագործման անհրաժեշտությունը հնարավորություն են ընձեռում մարդու մեջ տեսնել ստեղծագործական մի հիմք, հասարակության և պատմության հիմնական ուժ։

Մարքսը հասարակությունը դիտում է ոչ թե որպես մի մեծություն, որը գոյություն ունի կոնկրետ մարդկային անձնավորություններից, խմբերից ու դասակարգերից անկախ։ Նրա բարոյական արժեքը որոշվում է այն բանով, թե ինչպես և ինչ չափով է այն ծառայում մարդկային անհատի շահերին ու նպատակներին, քանի որ մարդը, նրա ազատությունը, ստեղծագործական ու բարոյական զարգացումը սոցիալական առաջադիմության կարևորագույն ցուցանիշներ են։

Միայն հասարակության մեջ է մարդն ստանում այն միջոցները, որոնք անհրաժեշտ են նրա համակողմանի զարգացման համար, միայն հասարակության մեջ է հնարավոր նրա անձնական ազատությունը։ Հասարակությունը ծնում է մարդկային անհատին, պահպանում և հակադրվում նրան։ Մարդը ստեղծում է հասարակական ձևեր և ինքն էլ հակադրվում դրանց, «քայքայում» և վերափոխում է դրանք՝ իր իդեալներին ու նպատակներին համապատասխան։ «Այն պայմանները, որոնցում տեղի է ունենում անհատների շփումը... նրանց անհատականությանը վերաբերող պայմաններ են և նրանց համար ինչ-որ արտաքին բան չեն. դրանք այն պայմաններն են, որոնցում միայն որոշ հարաբերությունների մեջ գտնվող այդ որոշակի անհատները կարող են արտադրել իրենց նյութական կյանքը և այն, ինչ կապված է դրա հետ, հետևաբար, դրանք այդ անհատների ինքնագործունեության պայմաններն են և ստեղծում են նրանց այդ ինքնագործունեությամբ» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 72)։

Բացահայտելով բնական դետերմինացիայի գործողության բնույթը հասարակական կյանքի պայմաններում և այն ներքին օրգանական կապն ու փոխկախվածությունը, որոնք առկա են հասարակության և մարդու միջև, Մարքսը ձևակերպում է պատմության իր մատերիալիստական ըմբռնման կարևորագույն դրույթները, որոնցում պատմական պրոցեսի օբյեկտիվ և օրինաչափ բնույթի ընդունումը ո՛չ միայն չի բացառում, այլ ենթադրում է մարդու ազատ ու ակտիվ ստեղծագործությունը։ Պատմությունն իր էությամբ օբյեկտիվ դետերմինացված պրոցես է, բայց դա հասարակական իրականության, առանձնահատուկ կարգի իրականության զարգացման պրոցես է, իրականություն, որի կառուցվածքներն ու հարաբերությունները պատրաստի չեն տրվում մարդուն և մարդկությանը, այլ, վերջին հաշվով, նրա սեփական ստեղծագործության արդյունքն են։

Պատմությունը, ըստ մարքսիստական փիլիսոփայության, մարդուց ան-

մարքս-լենինյան փիլիսոփայության մեջ: Այսօր այդ փիլիսոփայությունը նոր հայացքների ու հույսերի աղբյուր է, այն տեսական ուղեցույցը, որի օգնությամբ մարդկությունը կարող է լուծել իր կենսական պրոբլեմները: Մարքսիզմ-լենինիզմի նշանակությունը ժամանակակից աշխարհում բացատրվում է դրա հիմնարար սկզբունքների էությամբ: Մեր ժամանակի համար առանձնահատուկ նշանակություն են ստանում մարքսիզմի հակադոգմատիզմն ու արմատական հումանիզմը, որով տոգորված են նրա մյուս բոլոր կողմերը, և որը դրանք միավորում է մարդու շահերին ծառայող, օրգանապես ամբողջական ու հեղափոխական մի տեսության մեջ:

Մարքսիզմ-լենինիզմը մարդու հումանիստական փիլիսոփայությունն է, ազատ ու ակտիվ ստեղծագործության, հեղափոխական գործողության փիլիսոփայություն: Այն իր կողմն է գրավում տարբեր երկրների ու ժողովուրդների մարդկանց, որոնք նրա մեջ տեսնում են իրեն արդարացրած տեսական մի ուղեցույց, որի օգնությամբ կարելի է լուծել ժամանակակից մարդկային կյանքի բարդ ու դժվարին պրոբլեմները: Գիտական կոմունիզմի տեսության նման գրավչությունը բացատրվում է ոչ թե պարզապես նրա հակադոգմատիկական և հումանիստական բնույթով, այլ նրանով, որ այդ հումանիզմը ռեալիստական է, արմատական, կոնկրետ ու գործուն: Այն հուշակում է մի սկզբունք, որը պահանջում է ստեղծել ու իրականացնել սոցիալական կյանքի այնպիսի ձևեր, որոնք պատմության յուրաքանչյուր տվյալ փուլում ապահովեն ամենալավագույն պայմաններ մարդկային անհատի ազատության և զարգացման համար, ապահովեն նրա նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարումը: Մարքսիստական փիլիսոփայության ուժը ո՛չ միայն նրա տեսական հիմնավորվածության մեջ է, այլև սոցիալիստական պրակտիկայի այն հաջողությունների, որոնց վկան է ժամանակակից մարդկությունը: Սոցիալիզմը դարձել է հզոր պատմական ռեալություն, որը որոշակի ազդեցություն է ունենում ժամանակակից միջազգային կյանքի ողջ ընթացքի վրա: Այսօր սոցիալիստական համագործակցության երկրներում վիթխարի ստեղծագործական աշխատանք է կատարվում կյանքի տնտեսական, հասարակական և կուլտուրական ձևերի կատարելագործման ու զարգացման, մարքսիստական հումանիզմի սկզբունքները նոր հասարակության ռեալ ձևերի մեջ գործնականորեն կիրառելու ասպարեզում: Սովետական իշխանության տարիներին մեր երկրում կառուցվել է զարգացած սոցիալիստական հասարակարգ, արմատական առաջադիմական վերափոխումներ են իրականացվել հասարակական կյանքի ամենատարբեր բնագավառներում: Բայց անելիքները դեռևս շատ են՝ ռեալ կենսագործելու համար առաջավոր սոցիալական սիստեմի հնարավորությունները: «Այո՛, մենք գիտենք, որ դեռևս ոչ բոլոր պրոբլեմներն են լուծված,— ՍՄԿԿ XXV համագումարում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը:— Մենք մեր բոլոր քննադատներից լավ գիտենք մեր թերությունները, տեսնում ենք դժվարությունները: Եվ մենք հաջողությամբ հաղթահարում ենք դրանք: Մենք տեսնում ենք և գիտենք այն ուղիները, որոնք տանում են դեպի մեր հասարակարգի հետագա զարգացում և կատարելագործում:

Մենք դեռևս չենք հասել կոմունիզմին: Բայց ամբողջ աշխարհն է տեսնում, որ մեր կուսակցության գործունեությունը, նրա ձգտումները նպատակաուղղված են այն բանին, որ հնարավոր ամեն ինչ արվի մարդու բարօրության համար, հանուն մարդու: Կուսակցության հենց այդ վսեմ, մարդասիրական նպատակն է նրան հարազատացնում ժողովրդի հետ, նրան սովետական բոլոր մարդկանց հետ միացնում ամուր, անքակտելի կապերով»:

# ՍՄԿԿ-Ն ԵՎ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. Վ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՄԱՐԴՈՒ ԿՈՉՈՒՄՆ է օգտակար լինել աշխատավոր ժողովրդին, իսկ վերջինիս իդեալը կոմունիստական հասարակությունն է, որն ապահովում է բոլորի ազատությունն ու իրավահավասարությունը, բարեկամությունն ու երջանկությունը: Հենց այդ մեծ նպատակի համար է ստեղծվել ու գործում կոմունիստական կուսակցությունը: Նա իր անդամներին ու բոլոր աշխատավորներին դաստիարակում է կոմունիզմի ոգով: ՍՄԿԿ ծրագրային պահանջներից մեկը կոմունիզմի արժանավոր կառուցող նոր մարդու ձևավորումն է, որի վրա բացառիկ ուշադրություն դարձրեց կուսակցության XXV համագումարը. «Մեր կարգերի ուժը,— ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, մասսաների գիտակցականությունն է: Եվ կուսակցությունն իր մշտական հոգսն է համարում կոմունիստական գիտակցականության, կոմունիզմ կառուցելու պատրաստակամության, կամքի ու հմտության դաստիարակումը» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, «Հայաստան» հրատ., 1976, էջ 118): Համագումարի փաստաթղթերն ու որոշումներն ուղեցույց են նաև կոմունիստական դաստիարակության ասպարեզում կուսակցության գործունեության հուժկու ծավալման համար:

Նոր մարդու ձևավորումը բարդ ու կոմպլեքսային խնդիր է, որը լուծվում է բազմապիսի ձևերով, նոր տիպի կրթությամբ ու դաստիարակությամբ, ապրելակերպով ու մտածելակերպով: Այդ պրոցեսն սկսվում է ընտանիքում՝ պատանեկությունից ու ծավալվում երիտասարդության շրջանում, դպրոցական նստարանից՝ բուհական լսարանում, աշխատանքային գործունեության մեջ, հասարակական կյանքում:

Գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը մշակեցին հին աշխարհի արմատական վերափոխման ուսմունք, որը նոր պայմաններում շարունակեց ու զարգացրեց մեծահանճար Վ. Ի. Լենինը: Մարքսիզմ-լենինիզմը դարձավ աշխարհի նորարարների՝ կոմունիստների, հեղափոխականների, աշխատավոր մասսաների պայքարի ու հաղթանակի գիտությունը:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո, նոր հասարակարգի կառուցմանը համընթաց, օբյեկտիվորեն դրվեց նոր մարդու դաստիարակության հարցը: Խոսքը սոցիալիզմի և ապա կոմունիզմի կառուցողի մասին է, ընդ որում, դա չէր վերաբերում սոսկ առանձին անհատների կամ խմբերի, այլ ամբողջ հասարակությանը, նրա բոլոր անդամներին, միլիոնավոր աշխատավորներին: Վ. Ի. Լենինը 1920 թվականին, կոմերիտմիության III համագումարում արտասանած ճառում ասաց. «Կոմունիստական բարոյականության հիմքն է կազմում կոմունիզմն ամրապնդելու և ավարտելու պայքարը: Ահա թե ո՛րն է կոմունիստական դաստիարակության, կրթության ու

ուսման հիմքը։ Ահա թե ո՛րն է այն հարցի պատասխանը, թե ինչպե՛ս պետք է սովորել կոմունիզմ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 359—360)։

Կոմունիստական դաստիարակության նպատակն է նպատակասլաց ու սիստեմատիկ աշխատանքով պատրաստել բազմակողմանիորեն զարգացած ներդաշնակ անձնավորություններ, որոնք կոչված են կառուցելու կոմունիստական հասարակարգը։ Այս ասպարեզում կուսակցությունը վիթխարի աշխատանք ծավալեց և հասավ խոշոր նվաճումների։ Նրա ղեկավարությամբ սովետական մարդիկ դարձան նոր կյանքի ակտիվ կառուցողներ, հասան սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակին, իսկ այժմ, կատարելագործելով զարգացած սոցիալիստական հասարակությունը, կառուցում են կոմունիզմ։ Հետևապես, առաջնահերթ է կոմունիզմ կառուցողի դաստիարակության հարցը։ ՍՄԿԿ ծրագրում առաջադրվում են կոմունիզմի կառուցման երեք հիմնական խնդիրներ՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծում, կոմունիստական հարաբերությունների ձևավորում և նոր մարդու՝ կոմունիզմ կառուցողի դաստիարակում։ Դրանք անխզելիորեն կապված են միմյանց և կարող են լուծվել մի ընդհանուր միասնական պրոցեսում։

Անշուշտ, թե՛ սոցիալիզմ և թե՛ կոմունիզմ կառուցողը նոր տիպի մարդն է։ Նրանց միջև կան և՛ ընդհանրություններ, և՛ տարբերություններ, որոնք պայմանավորված են միևնույն ֆորմացիայի՝ կոմունիստական հասարակության երկու տարբեր աստիճաններով՝ սոցիալիզմով և կոմունիզմով։ Բոլոր դեպքերում նրանք հանդիսանում են մեկը-մյուսի զարգացումը և, բնականաբար, կոմունիզմ կառուցողը ներկայանում է ավելի բարձր մակարդակով։ Ինչպես նշված է ՍՄԿԿ ծրագրում, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը պահանջում է՝ լինել անսահման նվիրված կոմունիզմի գործին, ազնիվ, բարեխիղճ, աշխատասեր, սկզբունքային, կոլեկտիվիստ, ինտերնացիոնալիստ, անհաշտ թերությունների, սխալների ու թշնամիների նկատմամբ։ Ակներև է, որ այդ հատկանիշները կարելի է ձեռք բերել աշխատանքային եռանդուն գործունեությամբ, գիտակցականության և ընդհանուր կուլտուրայի մակարդակի բարձրացումով, հասարակական կյանքին ակտիվ մասնակցելով։

Կոմունիստական դաստիարակությունը համապարփակ հասկացություն է և ներառնում է այնպիսի կարևոր խնդիրներ, ինչպիսիք են՝ մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորումը, կոմունիստական վերաբերմունքն աշխատանքի ու հասարակական սեփականության նկատմամբ, սովետական հայրենասիրությունն ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմը, կոլեկտիվիզմի ու հումանիզմի արմատավորումը, մարդու գեղագիտական ու ֆիզիկական դաստիարակությունը։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԿԱՆՑ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ դաստիարակության առանցքն է մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորումը, որը նրանց տալիս է ճիշտ կողմնորոշում ու նպատակի պարզություն, վստահություն սեփական ուժերի և հավատ՝ հաղթանակի նկատմամբ։ Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում շեշտեց. «Կոմունիստական դաստիարակության գործը, ինչպես և իր ամբողջ հեղափոխական վերափոխիչ գործունեությունը ՍՄԿԿ-ն կառուցում է մարքս-լենինյան տեսության ամուր հիմքի վրա» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 118)։ Դա նշանակում է ունենալ դիալեկտիկա-մատերիալիստական աշխարհըմբռնում, որը ձեռք է բերվում մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունների, կուսակցության փաստաթղթերի խոր ուսումնասիրությամբ, բազմապիսի գիտելիքների կուտակմամբ, բնության ու հասարակության զարգացման օրենքների իմացությամբ և դրանց կիրառմամբ կյանքում։ ՍՄԿԿ-ն իր ողջ գործունեությամբ, մասսայական գրականության հրատարակությամբ, ժողովրդական կրթության ու քաղաքական ուսուցման ծավալմամբ, ինֆորմացիայի բազմաթիվ միջոցների օգտագործմամբ աշխատավոր լայն զանգվածներին ընդգրկել է այդ պրոցեսի մեջ ու



հասել մեծ հաջողությունների։ Մարքս-լենինյան տեսությունը տիրապետել է մասսաներին և դարձել հզոր ուժ։

Սովետական մարդկանց մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորումը տեղի է ունենում մի այնպիսի դարաշրջանում, երբ ամենուր ծավալված է սոցիալիզմի ու կապիտալիզմի պայքարը։ Ճիշտ է, մեր կուսակցությունն ու կառավարությունը հետևողականորեն կիրառում են տարբեր սոցիալական սիստեմներ ունեցող երկրների խաղաղ գոյակցության քաղաքականություն, բայց հայտնի է, որ այդ սկզբունքը չի տարածվում գաղափարական պայքարի վրա։ Եվ դա միանգամայն հասկանալի է, քանի որ կոմունիստական ու բուրժուական գաղափարախոսությունները հակադիր են և դրանց միջև չի կարող հաշտություն լինել։ Ուստի, մարքս-լենինյան աշխարհայացքի հետ անհարիր են ապոլիտիկությունն ու քաղաքական դալտոնիզմը. պահանջվում է կյանքում ցուցաբերել դասակարգային մոտեցում, բացահայտել բուրժուական ու օպորտունիստական գաղափարախոսության սնանկությունը, մերկացնել հակակոմունիզմի, մաոիզմի, հակասովետիզմի զրպարտչական բնույթը։ Անշուշտ, դա պետք է կատարվի խորապես հիմնավորված, անհերքելի փաստերի ուժով ու գիտական ընդհանրացումներով։ Միանգամայն իրավացի է Մ. Կորնֆորտը, երբ նշում է, թե գաղափարական կյանքում հարցի էությունն «...ընդդիմախոսի հասարակ ջախջախումը չէ, այլ նրան կոնստրուկտիվ կերպով գերազանցելը... Կուսակցականության արտահայտությունը ոչ թե մեծամտությունն ու կոպտությունն է, որոնք միայն մատնում են անվստահությունն ու տգիտությունը, այլ գիտական մոտեցումն ու բանականությունը» (М. Корнфорт, Марксизм и лингвистическая философия, М., 1968, стр. 436)։

Մարքս-լենինյան աշխարհայացքի հետ անհամատեղելի են ամեն կարգի հակագիտական, իդեալիստական տեսակետները, կրոնական նախապաշարմունքները, որոնք սերմանում են խավարամտություն ու պատճառում մեծ չարիքներ. «...աստծու իդեայի ամեն մի, նույնիսկ ամենանրբացրած, ամենաբարեմիտ պաշտպանությունը կամ արդարացումը ռեակցիայի արդարացումն է» (Վ. Ի. Երկեր, հ. 35, էջ 125)։

Սովետական մարդկանց մարքս-լենինյան աշխարհայացքի հետ անխզելիորեն կապված է նրանց կոմունիստական բարոյականությունը։ Եթե աշխարհայացքը հասարակական գիտակցության դրսևորման ձև է, ապա բարոյականությունն էլ աշխարհայացքի դրսևորման ձև։ Ուրեմն, դրանք միաձուլված են և մարդկանց աշխարհայացքի ու բարոյականության կազմավորումը տեղի է ունենում համընթաց։ Կոմունիստական գաղափարական անաղարտությունը, գիտական աշխարհըմբռնումն ապահովում են մարդու բարոյական բարձր արժանիքների դրսևորումը, նրա կիրթ ու խորապես ժողովրդական վարքագիծը։ Դրա ցայտուն մարմնացումն են ականավոր մարքսիստները, կոմունիստները։ Հատկապես պետք է դաստիարակվել անկուգական Լենինի օրինակով, որը, Պոլ Վայյան-Կուտյուրիեի դիպուկ արտահայտությամբ, «...նոր մարդու ավարտված տիպն է...» (Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին, Հայպետհրատ, 1958, էջ 778)։

Վ. Ի. Լենինի ստեղծած ու կոփած կուսակցության պատմությունն ամբողջությամբ համակված է նրա գաղափարախոսությամբ, և պետք է հմտությամբ օգտագործել մեծ առաջնորդի մտքի անսպառ գանձարանը։

Մեր կուսակցությունը դաստիարակում է կոմունիզմի ակտիվ կառուցողներ, այսինքն՝ բազմակողմանիորեն զարգացած այնպիսի անձնավորություններ, որոնք աչքի են ընկնում գաղափարական համոզվածությամբ, մասնագիտական կարողությամբ, բարձր կուլտուրայով ու մարդկային արժանիքներով։ «Ամեն ինչ մարդու, նրա բարօրության համար»— այսպիսին է կուսակցության գործունեության նշանաբանը։ Մարքս-լենինյան աշխարհայացքը, կոմունիստական գաղափարախոսությունը սովետական մարդկանց բարոյա-քաղաքական կերպարի հիմքն է, նրանց արգասավոր գործունեության գրավականը։

ՍՄԿԿ XXV համագումարը, պահանջելով ուժեղացնել գաղափարական աշխատանքը, ցույց տվեց, որ «Մասսաների քաղաքական դաստիարակության

կան դաստիարակության սերտ միասնության՝ հաշվի առնելով աշխատավորության զանազան խմբերի առանձնահատկությունները» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 122)։ Հենց այդպես էլ վարվում են կուսակցական կազմակերպությունները արտադրական օբյեկտներում, կուլտուրայի հիմնարկներում, բանակում, բնակչության բոլոր խավերում։ Հմտությամբ օգտագործելով մասսայական ինֆորմացիայի բոլոր միջոցները, պետք է լայնորեն պրոպագանդել կուսակցության ու ժողովրդի հեղափոխական, մարտական ու աշխատանքային ավանդույթները և սովետական մարդկանց մղել դեպի նոր բնագծերի նվաճում։

Մարքսիզմ-լենինիզմը մեր երկրում տիրապետող գաղափարախոսություն է և իր մարմնացումն է գտնում կուսակցության ու ժողովրդի գործերում։ Որքան բարձր լինի սովետական մարդկանց գիտակցականությունը, այնքան արդյունավետ կլինի նրանց աշխատանքը։ Սովետական երկրին պետք են ոչ թե սոսկ մասնագետներ՝ այդ բառի նեղ իմաստով, այլ համակողմանի զարգացած մարդիկ, որոնք ո՛չ միայն խորապես տիրապետում են իրենց գործին, ունեն կուլտուրական բարձր մակարդակ, այլև աչքի են ընկնում կոմունիստական գաղափարայնությամբ ու քաղաքական կոփվածությամբ։ Հենց այդ է սովորեցնում ՍՄԿԿ պատմությունը, որը գաղափարական հզոր միջոց է մարդկանց զինելու մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքով, ունենալու գիտական աշխարհայացք, մինչև վերջ նվիրված լինելու ժողովրդի գործին և անհաշտ պայքար մղելու բոլոր ու ամեն տեսակի թշնամիների, բուրժուական ու ռեֆորմիստական գաղափարախոսության, օպորտունիզմի, ռևիզիոնիզմի ու դոգմատիզմի դեմ։

ՍՄԿԿ-ն առաջին նոր տիպի՝ մարքս-լենինյան պրոլետարական կուսակցությունն է, որը կուտակել է հեղափոխական շարժման և սոցիալիստական-կոմունիստական շինարարության ղեկավարման վիթխարի փորձ։ Նա իր գործունեությամբ ու ձեռք բերած նվաճումներով ամենայն իրավամբ դարձել է միջազգային կոմունիստական շարժման առաջավոր ջոկատը։ Ուստի, նրա պատմության ուսումնասիրությունն ունի համաշխարհային նշանակություն։ Վ. Ի. Լենինը դեռ 1918 թվականին գրել է. «...բոլշևիզմը պիտանի է որպես տակտիկայի տիպար բոլորի համար» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 28, էջ 372)։ Խոսելով մեր կուսակցության փորձի միջազգային նշանակության մասին, Պորտուգալիայի կոմունիստական կուսակցության գլխավոր քարտուղար Ալվարո Կունյալը ՍՄԿԿ XXV համագումարում ասաց. «Իմացեք, սովետական ընկեր կոմունիստներ, դուք շատ եք հարկավոր բոլոր երկրների բանվոր դասակարգին, աշխատավորներին... Սովետական Միության բուն գոյությունը, երկրագնդում առաջին կոմունիստական հասարակարգի կառուցման ասպարեզում ՍՄԿԿ-ի ամբողջ գործունեությունը, խաղաղության և անվտանգության համար անձնվեր պայքարը միևնույնն է, ինչ արևի լույսը երկրագնդի համար» («Սովետական Հայաստան», 27 փետրվարի, 1976)։

ՍՄԿԿ-ն ուժեղ է ժողովրդի հետ ունեցած անխզելի կապով և վայելում է մեր երկրի աշխատավորների ու աշխարհի առաջադեմ մարդկության սերն ու վստահությունը։ Իրոք որ կոմունիստական կուսակցությունը մեր դարաշրջանի խիղճն ու պատիվն է, միտքն ու իմաստությունը։ Ինչպիսին կուսակցությունն է, այնպիսին էլ նրա պատմությունը, որի ուսումնասիրությունը հզոր զենք է նոր մարդու՝ կոմունիզմ կառուցողի դաստիարակության գործում։

---

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՍՈՑԻԱԼ-ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՏԵՂԱՇԱՐԺԵՐԸ ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

**Մ. Գ. ՍԱՆԹՐՈՍՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ որոշեց առաջիկա հնգամյակում մեր երկրի էկոնոմիկայի զարգացման ստրատեգիան, որը, ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը, «...վերաբերում է նախ և առաջ սովետական մարդկանց բարեկեցության հետագա բարձրացմանը, նրանց աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավմանը, առողջապահության, կրթության, կուլտուրայի զգալի առաջադիմությանը՝ այն ամենին, ինչը նպաստում է նոր մարդու ձևավորմանը, անհատի համակողմանի զարգացմանը, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործմանը» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, «Հայաստան» հրատ., 1976 թ., էջ 66)։

Տնտեսական ու սոցիալական զարգացման այդ հսկայական ծրագրի իրականացման հիմնական ուղին կուսակցությունը համարում է աշխատանքի արտադրողականության բարձրացումը այնպիսի մասշտաբներով, որ առաջիկա հնգամյակում դրա հաշվին ստացվի ազգային եկամտի աճի 85—90 տոկոսը, արդյունաբերական արտադրանքի աճի մոտավորապես 90 տոկոսը, գյուղատնտեսության և շինարարության արտադրանքի ամբողջ աճը (տե՛ս նույն տեղը, էջ 73)։ Կուսակցության առաջադրած այս ծրագրի կենսագործման պայմանը գիտատեխնիկական առաջընթացի արագացումն է ու արտադրության մեջ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների համակողմանի ներդրումը։

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ հեղաշրջում է գիտության, իսկ դրա նվաճումների տեխնոլոգիական կիրառման շնորհիվ՝ նաև տեխնիկայի ու տեխնոլոգիայի, արտադրողական ուժերի և սոցիալական բնագավառներում։ Այն համընդհանուր է և իր ոլորտի մեջ է առել գրեթե ողջ աշխարհը։ Տարբեր են, սակայն, նրա մասշտաբները, տեմպերն ու հետևանքները, որոնք ամեն մի կոնկրետ դեպքում պայմանավորված են տվյալ երկրի զարգացման մակարդակով, սոցիալ-տնտեսական իրավիճակով, քաղաքական հարաբերություններով և այլ գործոններով։ Գիտատեխնիկական հեղափոխությունը նշանավորվեց տեխնիկայի բնագավառում կատարված արմատական փոփոխություններով, երբ աշխատանքի եռօղակ կարգաբերված գործիքը (շարժիչ, հաղորդիչ, գործադիր) սկսեց փոխարինվել քառօղակ (նաև ավտոմատ) գործիքով։ Կատարված տեխնիկական հեղաշրջման շնորհիվ սկսվեցին տեխնոլոգիական պրոցեսների լայն մասշտաբներով ավտոմատացումը, ատոմային էներգիայի օգտագործումը, տիեզերական տարածությունների յուրացումը և այլն։ Արտադրողական ուժերի զարգացման ելակետային տարրի՝ աշխատանքի գործիքի և այլ

Գիտության սոցիալ-տնտեսական դերի արդյունավետության բարձրացման գործում շատ կարևոր նշանակություն ունի ինչպես հիմնարար, այնպես էլ կիրառական-գիտատեխնիկական հետազոտական աշխատանքների ճիշտ կազմակերպումը, այդ բնագավառների կադրերի պատրաստման համամասնության ապահովումը։ Բուրժուական սոցիոլոգների մեջ քիչ չեն հոռետեսորեն տրամադրված այն մտածողները, որոնք առաջարկում են դադարեցնել հիմնարար հետազոտությունները, այսինքն, արհեստականորեն կանխել գիտության զարգացումը, որով, իբր, կկանխվեն նաև նրա նվաճումների կիրառման հետևանքով առաջացող վնասակար հետևանքները։ Ինչ խոսք, նման դատողությունները անհիմն են, ոչ գիտական։

Մեր կուսակցությունը նոր հնգամյակում ևս սովետական գիտության առաջնահերթ խնդիրն է համարում գիտատեխնիկական առաջընթացի արագացումը՝ ընդլայնելով հիմնարար հետազոտությունները, գիտատեխնիկական հեղափոխության պրոբլեմների ուսումնասիրումը, կատարելագործելով արտադրության հետ կապի ձևերն ու մեթոդները։ Գիտատեխնիկական հեղափոխությունը պահանջում է. «...պլանավորումն ու տնտեսական խթանումը կատարելագործել այնպես, որպեսզի պայմաններ ստեղծվեն լիովին նպաստելու նոր գաղափարների շուտափույթ իրականացմանը ամբողջ շղթայով մեկ՝ գյուտարարությունից մինչև մասսայական արտադրություն, հուսալի տնտեսական պատնեշ կանգնեցնելու հնացած արտադրանքի թողարկման առջև» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 79)։

Մեր երկրում գիտատեխնիկական և տեխնիկական-կիրառական հետազոտությունների համար հատկացումները կազմում են գիտության զարգացման նպատակով կատարվող բոլոր հատկացումների 86,6—87,8 տոկոսը (տե՛ս Л. М. Гатовский, Экономические проблемы научно-технического прогресса, М., «Наука», стр. 130)։ Այդպիսի կողմնորոշման շնորհիվ տարեցտարի բարձրանում են գիտատեխնիկական առաջընթացի տեմպերը։ Եթե 1951—1955 թվականներին մեր երկրում մշակվել էին նոր տիպի մեքենաների, սարքավորումների, ապարատների և գործիքների 4.345 նմուշ, իսկ հաջորդ հինգ տարում՝ 13 հազար, ապա հետագա 10 տարում մշակվեց արդեն 44,7 հազար նմուշ։ Միայն իններորդ հնգամյակում արմատավորվել է 16,5 հազար անուն նոր տեսակի մեքենայի, սարքավորման, գործիքի արտադրություն, երկու անգամ ավելի, քան նախորդ հնգամյակում։ Հետզհետե ավելանում են մեքենայացված և ավտոմատացված հոսքային գծերը։ Այսպես, 1974 թվականին մեր երկրում կային 117 հազար մեքենայացված և 16.000 ավտոմատացված հոսքային գծեր, 60 հազար կոմպլեքսային մեքենայացված և ավտոմատացված արտադրամաս ու արտադրություն և այդ տիպի 5,8 հազար ձեռնարկություն՝ երեք անգամ շատ, քան 1965 թվականին։ Արտադրության տեխնիկական բազայի կատարելագործման շնորհիվ միայն արտադրությունից կրճատվել է մեկ մլն մարդ, իսկ ամբողջ իններորդ հնգամյակում 4,3 մլն մարդ, ձեռքի աշխատանքից մեքենայականի է փոխադրվել 2,1 մլն մարդ (տե՛ս «Правда», 4 հունիսի, 1975 թ.)։ Այս ամենի շնորհիվ է, որ գնալով արագ տեմպերով բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը։ Այսպես, եթե երկրի արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության մակարդակը 1940 թ. ընդունենք 100 տոկոս, ապա 1965 թ. այն հասել է 372, իսկ 1974 թ.՝ 622 տոկոսի (տե՛ս СССР в цифрах в 1974 г., стр. 36)։ Սա հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման ակնառու ցուցանիշ է, գիտատեխնիկական հեղափոխության ծավալման արդյունք։ Ահա թե ինչու Լ. Ի. Բրեժնևը շեշտում է. «Այժմ մեզանում էկոնոմիկայի ասպարեզում չկա ավելի կարևոր գործ, քան գիտատեխնիկական հեղափոխության իրագործումը։ Դրանից է կախված, դրանից է բխում մեր հասարակության զարգացման շատ պրոբլեմների լուծումը» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 3, էջ 149)։

Տեխնիկայի և տեխնոլոգիայի առաջադիմական տեղաշարժերի հիման վրա մեծանում է մտավոր աշխատանքի տեսակարար կշիռը նյութական արտա-



դրության ոլորտում։ Այսպես, ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված սոցիալական խմբերից մեր երկրում առավել արագ տեմպերով, մոտ 10 անգամ, աճել է բարձրագույն կրթությամբ մասնագետների թիվը (1939 թ. եղած 1,2 մլն-ից 1975 թ. հասել է 11,3 միլիոնի)։ Ընդ որում, այս ցուցանիշից 2,5 անգամ բարձր է ինժեներա-տեխնիկական աշխատողների աճի ցուցանիշը (տե՛ս СССР в цифрах в 1974 г., стр. 15, 16)։ Եվ դա պատահական չէ. երկրի ժողովրդական տնտեսության մեջ արդյունաբերական արտադրության աճին համապատասխան մեծանում է տեխնիկական մտավորականության պահանջը, վերակառուցվում և ընդլայնվում է ժողովրդական կրթության սիստեմը։ Միայն իններորդ հնգամյակում կյանք մտավ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ 9 միլիոն մասնագետ, որից 3,4 միլիոնը՝ բարձրագույն կրթությամբ։ Ելնելով ժողովրդական տնտեսության պահանջներից ու նրա զարգացման հեռանկարից, կուսակցությունը խնդիր է դնում տասներորդ հնգամյակում պատրաստել բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ 9,6 միլիոն մասնագետ։

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԱԶԴԵՑՈՒԹՅԱՄԲ դրական արագ տեղաշարժեր են կատարվում զարգացած սոցիալիստական հասարակության դասակարգային կառուցվածքում։ Գիտության նվաճումները, մարմնավորվելով տեխնիկայի և տեխնոլոգիայի մեջ, լայնորեն կիրառվում են, ամենից առաջ, արդյունաբերական արտադրության մեջ, և, դրան համապատասխան, աճում է աշխատողների տեսակարար կշիռն այդ բնագավառում։ Այսպես, բանվոր ծառայողները ամբողջ բնակչության մեջ 1913 թ. կազմում էին 17 տոկոս, որից բանվորներ՝ 14,6, 1939 թ.՝ համապատասխանորեն 50,2 և 33,5 տոկոս, իսկ 1974 թ.՝ 82,2 և 60,6 տոկոս։ Բանվորների տեսակարար կշիռը մեծացել է ավելի քան չորս անգամ։ Մինչդեռ գյուղացիության տեսակարար կշիռը 1913 թ. 66,7 տոկոսից իջել է և 1974 թ. կազմել 17,8 տոկոս (տե՛ս Население СССР, 1973 г., Статистический сборник, «Статистика», М., 1975, стр. 40)։ Եթե նկատի ունենանք, որ այդ նույն ժամանակամիջոցում երկրի բնակչության թիվը 159,2 մլն-ից հասել է 250,9 մլն-ի, ապա պարզ կդառնա, որ բանվոր-ծառայողների թիվը հարաբերականորեն աճել է շատ ավելի արագ։ Հիրավի, այն 1913 թ. եղած 11,4 մլն-ից 1974 թ. հասել է 99,7 մլն-ի կամ աճել մոտ ինն անգամ (տե՛ս СССР в цифрах в 1974 г., стр. 161)։ Այս տեղաշարժերը կատարվել են արտադրական բազիսի զարգացման և կատարելագործման շնորհիվ, մի խնդիր, որ լուծվեց պատմականորեն շատ կարճ ժամանակամիջոցում, երբ Ռուսաստանի փոքրաթիվ բանվոր դասակարգը, 20 միլիոնանոց մանր արտադրող գյուղացիական տնտեսությունների համարյա լրիվ անգրագետ զանգվածների հետ, կոմունիստական կուսակցության գլխավորությամբ, սկսեց կառուցել սոցիալիզմ։

Սոցիալիզմն էլ հենց ստեղծեց հասարակության անդամների բազմակողմանի զարգացման պայմաններ։ Ամբողջ աշխատավորությունը, բանվոր դասակարգը, որ Լենինի բնութագրմամբ «առաջին արտադրողական ուժն է», աճեց ու առնականացավ, հոգեպես հարստացավ։

Տեխնիկական հեղափոխության ավարտման և գիտատեխնիկական հեղափոխության ծավալման շնորհիվ վերափոխվեց մեր երկրի աշխատավորության որակական ու մասնագիտական կազմը։ Այսպես, եթե 1939 թ. ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բնակչության 1000 մարդուց 123-ն ուներ բարձրագույն և միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) կրթություն, այդ թվում՝ բարձրագույն՝ 13-ը, ապա 1974 թվականին՝ այդ թվերը համապատասխանորեն եղել են 738 և 80 (տե՛ս Население СССР, 1973 г., Статистический сборник, М., 1975, стр. 42)։ Ուշագրավ է, որ այժմ ժողովրդական տնտեսության մեջ ստեղծվել է մտավոր աշխատանքի և այն իրականացնող աշխատուժի որակավորվածության համամասնություն։ Այսպես, 1939 թ. մտավոր պատրաստականություն պահանջող աշխատանք կատարող յուրաքանչյուր հազար մարդուց

512-ն ունեի բարձրագույն և միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) կրթություն, իսկ 1975 թվականին՝ 965-ը (տե՛ս СССР в цифрах в 1974 г., стр. 16)։

Արտադրության զարգացմանը, գիտատեխնիկական հեղափոխության ծավալմանը զուգընթաց, համապատասխան կադրերի պատրաստումը առաջնային նշանակություն ունի։ Դա նաև բազմակողմանի զարգացած անհատի պատրաստման խնդրի բաղկացուցիչ մասն է, մի խնդիր, առանց որի լուծման, ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում, չի կարելի առաջ շարժել մեծ գործը՝ կոմունիզմի կառուցումը (տե՛ս ՍՄԿԿ XXIV համագումարի նյութեր, էջ 110)։ Սոցիալիստական հասարակարգում ստեղծվել է ժողովրդական կրթության, բանվորական և ինժեներա-տեխնիկական, գիտական կադրերի պատրաստման գիտական սիստեմ։ Ինչպես վերը նկատեցինք, առավել արագ տեմպերով աճել է ինժեներա-տեխնիկական անձնակազմը. դա գիտատեխնիկական հեղափոխության սոցիալական հետևանքների բնորոշ կողմերից է։ Այդ օրինաչափության դրսևորման հետևանքով արդյունաբերության մեջ արագորեն փոփոխվում է ինժեներա-տեխնիկական աշխատողների և բանվորների հարաբերակցությունը։ Այսպես, եթե 1928 թ. մեր երկրում ինժեներա-տեխնիկական աշխատողների հարաբերակցությունը բանվորների նկատմամբ եղել է 1 : 26, 1940 թ.՝ 1 : 9,6, ապա 1974 թ.՝ 1 : 6 (բանվորների հետ հաշված կրտսեր սպասարկող անձնակազմը և պահակության աշխատողները), (հաշվարկումը մերն է։ Տե՛ս Население СССР, 1973 г., стр. 42 и Народное хозяйство СССР в 1973 г., М., 1974 г., стр. 591)։

Հարաբերականորեն բարձր տեմպերով ավելացել է պրոֆտեխնիկական հաստատությունների և դրանցում սովորողների թիվը։ Այս հաստատություններն այժմ տարեկան մոտ 6 անգամ ավելի շատ շրջանավարտներ են տալիս, քան 1941 թվականին, շրջանավարտներ, որոնք անընդհատ համալրում են բանվորների շարքերը։

Աշխատանքի գործիքի, տեխնոլոգիայի արագ կատարելագործումը պահանջում են, որ արտադրության աշխատողները սիստեմատիկաբար ձեռք բերեն նոր մասնագիտություններ, բարձրացնեն իրենց որակավորումը։ Երբ վերլուծում ենք վիճակագրական տվյալները, պարզվում է, որ գիտատեխնիկական առաջընթացի տեմպերին համապատասխան, ավելի շատ աշխատողներ են ձեռք բերում նոր մասնագիտություն, բարձրացնում որակավորումը։ 1940 թ. նոր մասնագիտություն է ձեռք բերել 1,9 մլն մարդ, իսկ 1973 թ.՝ 5,4 մլն, այդ թվում բանվորներ՝ համապատասխանորեն 1,6 և 5,2 մլն։ Անմիջականորեն արտադրական ձեռնարկություններում որակավորումը բարձրացրել է 1940 թ.՝ 1,5 մլն, իսկ 1973 թ. 12,4 մլն բանվոր (տե՛ս Народное хозяйство СССР в 1973 г., стр. 599)։ Այժմ կուսակցությունը խնդիր է դնում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար, պրոֆտեխնիկական կրթության սիստեմի միջոցով, տասներորդ հնգամյակում պատրաստել մոտ 11 մլն որակյալ բանվորներ, գործարկել 1,1—1,2 մլն աշակերտական տեղով պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններ։ Պահանջվում է միաժամանակ բարելավել արտադրության մեջ բանվորների պատրաստումն ու որակավորումը (տե՛ս ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները, էջ 96)։

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ խոր փոփոխություններ, արմատական տեղաշարժեր է առաջացնում նաև գյուղատնտեսական արտադրության և գյուղացիության մեջ։ Սոցիալիզմի կառուցման տարիներին ժողովրդական տնտեսության ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման շնորհիվ հնարավոր եղավ վերացնել գյուղատնտեսական մանր տնտեսությունները և դրանց համախմբել կոլեկտիվ ու պետական խոշոր տնտեսություններում։ Հետագայում, զարգացած սոցիալիզմի կառուցման և գիտատեխնիկական հեղափոխության ծավալման հետ միասին, սկսվեց գյուղատնտեսական արտադրության հասարակական պայմանները արդյունաբերականին մոտեցնելու ծրագրի կենսագործումը՝ գյուղատնտեսական արտադրությունը կոմպլեքսային



մեքենայացման հիման վրա ինտենսիվացնելու ուղիով։ Նման ծրագիրը հետևողականորեն իրականացնելու շնորհիվ գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը, որ արդյունաբերականի համեմատությամբ նկատելիորեն ցածր էր, բարձրանում է արագորեն։ Այդ ուղիով, մի կողմից, աճում է գյուղատնտեսական արտադրանքի ծավալը, մյուս կողմից, պակասում է գյուղատնտեսական արտադրությամբ զբաղվող աշխատողների տեսակարար կշիռը, փոխվում է նաև նրանց մասնագիտական կառուցվածքը, առաջանում են գյուղատնտեսական նոր տեխնիկայի կիրառման պահանջին համապատասխան մասնագիտություններ։

Գյուղատնտեսական արտադրության նյութատեխնիկական բազայի ընդլայնումն ու կատարելագործումը իրականացվում է կապիտալ ներդրումներն անընդհատ մեծացնելու ուղիով։ Այսպես, 1956—1960 թթ. գյուղատնտեսության մեջ ներդրվել է 28,5 մլրդ ռուբլի, իսկ յոթերորդ հնգամյակում՝ 45 մլրդ, ապա իններորդ հնգամյակում՝ 131 մլրդ ռուբլի։ Տասներորդ հնգամյակում նախատեսվում է ներդնել 171,7 մլրդ ռուբլի։ Իրականացված միջոցառումների շնորհիվ աշխատանքի տեխնիկական ու էլեկտրաէներգազինվածության բարձրացմանը համապատասխան աճում է գյուղի աշխատավորության հանրակրթական և կուլտուր-տեխնիկական մակարդակը։ Այսպես, 1939 թվականին 1000 կոլտնտեսականից միայն 18-ն ուներ բարձրագույն և միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) կրթություն, 1959 թ.՝ 226-ը, իսկ 1973 թ.՝ 465-ը (տե՛ս Народное хозяйство СССР в 1972 г., М., 1973 г., стр. 40, 44)։

Պարտադիր միջնակարգ կրթության իրականացման շնորհիվ վերջնականապես կհաղթահարվի աշխատավորների կրթական մակարդակների տարբերությունը գյուղում և քաղաքում, որը նոր հասարակարգի կառուցման կարևոր խնդիրներից մեկն է։ Նոր հնգամյակում կուսակցությունը խնդիր է դնում հետևողականորեն մոտեցնել կոլտնտեսությունների և գյուղատնտեսական պետական տնտեսությունների աշխատանքի վարձատրության մակարդակները՝ աշխատանքի պայմանները և արտադրողականությունը հավասարեցնելու ուղիով։

Գիտատեխնիկական հեղափոխության ազդեցությամբ մեր երկրում զարգացած սոցիալիզմի պայմաններում կատարվող սոցիալ-դասակարգային տեղաշարժերի օրինաչափ ընթացքն այնպիսին է, որ հետզհետե արագացող տեմպերով ավելանում է բանվորների և ծառայողների տեսակարար կշիռը նաև գյուղատնտեսության մեջ։ Այսպես, եթե 1928 թ. այս բնագավառում կար 1,6 մլն բանվոր-ծառայող, 1940 թ. 2,7, ապա 1974 թ. այդ թիվը հասնում էր 9,4 միլիոնի (տե՛ս СССР в цифрах в 1974 г., стр. 162—163)։

1970 թվականի մարդահամարի տվյալներով, մեր երկրում ժողովրդական տնտեսության մեջ զբաղված էր 115,2 մլն մարդ, որից բանվորներ՝ 66,3 (1974 թ. 70,2 մլն), ծառայողներ՝ 30,6, կոլտնտեսականներ՝ 17,9 միլիոն (տե՛ս Народное хозяйство СССР в 1972 г., стр. 43. Б. И. Ноткин: Социальная структура советского общества, изд. «Знание», М., 1976, стр. 4)։ Եթե նկատի ունենանք, որ արդյունաբերության մեջ աշխատող մեկ բանվորի հաշվով 1974 թ. աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է, 1940 թ. համեմատությամբ, 6,2 անգամ, ապա պարզ կդառնա սոցիալական այդ տեղաշարժի դրական արդյունքը։

Բանվոր դասակարգը մեր երկրի զարգացած սոցիալիստական հասարակության ո՛չ միայն ամենամեծաթիվ դասակարգն է, հիմնական արտադրաուժը, այլև սոցիալիստական շահերի և կոմունիստական իդեալների կրողը։ «Նրա հեղափոխականությամբ, կարգապահությամբ, կազմակերպվածությամբ և կոլեկտիվիզմով է որոշվում նրա առաջատար դիրքը սոցիալիստական հասարակական հարաբերությունների սիստեմում»— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 96)։

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐՆ օրգանապես միացնելով տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ, Սովետական Միության էկոնոմիկան զարգանում է ինտենսիվ առաջընթացի ու-

ղիով։ Մեր երկրում մեկընդմիշտ լուծված է աշխատուժի զբաղվածության պրոբլեմը։ Սոցիալիստական հասարակությունն ազատ է սոցիալական այնպիսի չարիքից, ինչպիսին գործազրկությունն է։ Աշխատուժի զբաղվածության պրոբլեմը սոցիալիստական երկրներում լուծվում է պլանայնորեն, ապահովելով հասարակության սոցիալ-դասակարգային օպտիմալ կառուցվածքը։ Գիտատեխնիկական առաջընթացի շնորհիվ ազատված աշխատուժը գերազանցապես ներգրավվում է սպասարկման ոլորտում, որի զարգացման տեմպերն անհամեմատ բարձր են։ Եվ դա սոցիալական առաջընթացի բնութագրական ցուցանիշներից է։ Մեր երկրում նյութական արտադրության մեջ զբաղվածների տեսակարար կշիռը 1940—1974 թթ. իջել է 12,6 տոկոսով, ոչ-արտադրողական ոլորտում զբաղվածների տեսակարար կշիռն ավելացել է կրկնակի չափով, այդ թվում՝ առողջապահության, ֆիզիկական կուլտուրայի և սոցապահովության ոլորտում՝ մոտ 4 անգամ, լուսավորության և մշակույթի ասպարեզում՝ 3,6, գիտության և գիտական սպասարկման ոլորտում՝ մոտ 10 անգամ (տե՛ս СССР в цифрах в 1974 г., стр. 160—165)։

Գիտատեխնիկական հեղափոխության ազդեցությամբ հետզհետե արագանում են սոցիալիստական հասարակարգի սոցիալ-դասակարգային դրական տեղաշարժերը դեպի միատարր կոմունիստական հասարակություն։ Այժմ արդեն «Այլ են դարձել բանվոր դասակարգը՝ հասարակության հիմնական արտադրողական ուժը, արդի դարաշրջանի առավել առաջադիմական դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, որը հրաժարվել է մասնավոր սեփականատիրական հոգեբանությունից, սովետական մտավորականությունը, որն իր բոլոր ստեղծագործական ուժերը նվիրաբերում է կոմունիստական շինարարության գործին» (Լ. Ի. Բրեժնև, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հիսնամյակի մասին, Երևան, 1973, էջ 30)։ Սովետական Միությունում ստեղծվել է հիմնական շահերով ու գաղափարներով միասնական, բարոյա-քաղաքական կապերով միավորված հասարակություն, որը, օգտագործելով գիտության ու տեխնիկայի նվաճումները, արագորեն հաղթահարում է դասակարգային և ներդասակարգային տարբերությունները։ Եվ այդ բարդ ու բազմաբովանդակ սոցիալական պրոցեսը կարգավորվում է սոցիալիստական հասարակարգի զարգացման օրենքներին խստիվ համապատասխան, գիտական սկզբունքներով։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում գիտատեխնիկական հեղափոխության ազդեցությամբ կատարված սոցիալ-դասակարգային տեղաշարժերի մեծագույն արդյունքը մեր երկրի ժողովրդական տնտեսության համաչափ ու հաստատուն վերելքն է։ Ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերը մեր երկրում, կապիտալիստական զարգացած երկրների համեմատությամբ, բարձր են ավելի քան կրկնակի անգամ։ Անցած հինգ տարում սոցիալիստական համագործակցության երկրներում արդյունաբերությունը չորս անգամ ավելի արագ զարգացավ, քան զարգացած կապիտալիստական երկրներում (տե՛ս Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 13)։

Գիտատեխնիկական հեղափոխության ծավալման միջոցով հասարակական արտադրության կատարելագործման, աշխատուժի որակավորման, սոցիալական կառուցվածքի դրական տեղաշարժերի շնորհիվ տեղի ունեցող ամբողջ առաջընթացը սոցիալիզմի պայմաններում ծառայում է մարդուն, նրա բարօրությանը։ Նոր, տասներորդ հնգամյակի գերագույն խնդիրը ևս կուսակցությունը համարեց ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը։ Այդ ծրագիրը ևս անպայման կկենսագործվի, որովհետև դա իրենց սրբազան գործն են համարում սովետական բոլոր մարդիկ։



# ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ ԶՈԴՎՈՒՄ Է ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ

**Ս. Ա. ՎԱՐՈՍՅԱՆ**
ՀԿԿ Թումանյանի շրջկոմի երկրորդ քարտուղար

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ տարիներին մեր երկրի ժողովուրդների միջև ծնունդ առան նոր, ներդաշնակ հարաբերություններ՝ բարեկամության ու համագործակցության հարաբերություններ։ ՍՄԿԿ XXV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Անցած կես դարի աշխատանքային մեծագործությունների, Հայրենական մեծ պատերազմի մարտական սխրագործությունների մեջ անեղծ է կոփվել մեր երկրի բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, ազգերի ու ազգությունների անխախտ միասնությունը» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, «Հայաստան» հրատ., 1976, էջ 124)։ Այդ միասնությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների, լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի վառ դրսևորումն է։

Մեր կուսակցությունը իր ստեղծման առաջին իսկ օրերից վարել է ժողովուրդների հավասարության, բարեկամության ու համագործակցության քաղաքականություն։ Հավասարության, փոխադարձ համագործակցության պայմաններում, մարքսիզմ-լենինիզմի կուռ գաղափարներով զինված, պայքարելով մի նպատակի՝ կոմունիզմի կառուցման համար, մեր երկրի ժողովուրդներն ավելի սերտորեն են կապվել միմյանց, ավելի է ամրապնդվել նրանց եղբայրական սերտ բարեկամությունը։

Թումանյանի շրջանում համերաշխ մի ընտանիքի նման ապրում և աշխատում են երկու տասնյակից ավելի ազգերի ներկայացուցիչներ։ Միասնական ջանքերով, ձեռք-ձեռքի տված, նրանք պայքարում են կուսակցության առաջադրած խնդիրների անշեղ կենսագործման համար։ Համատեղ աշխատանքի ու պայքարի ընթացքում կոփվել ու դաստիարակվել է հոյակապ ավանդույթներ ունեցող աշխատանքային հիանալի սերունդ։

Սովետական իշխանության տարիներին անճանաչելիորեն փոխվել է մեր բնաշխարհը։ Անցած ողջ ժամանակահատվածում շրջանի բազմազգ աշխատավորները մշտապես գտնվել են սոցիալիզմի կառուցման առաջավոր բնագծերում, իրենց անունները անմար փառքով պսակել ինդուստրացման ու կոլեկտիվացման ժամանակ, Հայրենական մեծ պատերազմի ահեղ մարտերում, հետպատերազմյան խաղաղ շինարարության տարիներին։

Շրջանի կուսկազմակերպության աշխատանքը բնորոշ է նաև նրանով, որ իր մեջ արտացոլում է տարբեր ազգերի ներկայացուցիչների ստեղծագործա-

կան ջանքերը, կազմակերպությունն աշխատավորներին համախմբում մի ինտերնացիոնալ ընտանիքի մեջ: Ուժերի այս ներդաշնակ միացությունը տալիս է իր առողջ պտուղները:

Այսօր հանրապետության էկոնոմիկայում զգալի տեսակարար կշիռ ունի շրջանի թե՛ արդյունաբերությունը, թե՛ գյուղատնտեսությունը: Գործող արդյունաբերական 16 ձեռնարկություններից 14-ը, մեր մեծ հայրենիքի եղբայրական մյուս ժողովուրդների օգնությամբ ու աջակցությամբ, կառուցվել են սովետական իշխանության տարիներին: Ներկայումս մեր մակնիշով արտադրվող պղինձը, պղնձարջասպը, ծծմբաթթուն, պղնձի, ցինկի, կապարի խտանյութերը, հրակայուն նյութերը, հագուստեղենը, պահածոները, մրգերը և այլն առաքվում են միութենական ինը հանրապետությունների ավելի քան 450 հասցեներով: Մեզ օրինական հպարտություն է պատճառում այն, որ լեռնամետալուրգիական կոմբինատի պղնձարջասպի արտադրամասի ինտերնացիոնալ կոլեկտիվի արտադրանքը լայն ճանաչում է գտել ոչ միայն Միության մեջ, այլև արտասահմանյան մի շարք երկրներում:

Շրջանի ժողովրդական տնտեսությունը Միության բոլոր հանրապետություններից ստանում է մեքենաներ, հաստոցներ, գործիքներ, հումք, վառելիք, արդյունաբերական և գյուղատնտեսական ամենատարբեր սարքավորումներ:

Շրջանի գյուղատնտեսության մեջ զգալի են պտղաբուծության, բանջարաբուծության, անասնապահության նվաճումները: 1940 թ. համեմատությամբ, գրեթե երեք անգամ ավելացել է հացահատիկի յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը, կրկնապատկվել անասունների գլխաքանակը, միս, կաթի արտադրությունը: Ակնառու են հաջողությունները լուսավորության, կուլտուրայի, առողջապահության բնագավառներում:

ՄԵՐ ՀԱՍՈՒՄՆԵՐԻ ՄԵՋ ՎՃՌԱԿԱՆ դեր են խաղացել արտադրության մարդկանց ինտերնացիոնալ բարեկամությունը, նրանց համատեղ հերոսական ջանքերը: Կարևոր է, որ կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները ինտերնացիոնալիզմը և հայրենասիրությունը հաջողությամբ զուգակցում են աշխատանքային դաստիարակության հետ, որի շնորհիվ ավելի է ամրապնդվում տարբեր ազգերի մարդկանց եղբայրական բարեկամությունը: Թերևս այս առումով ամենալավ օրինակը ծառայում է Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատը: Երկուհարյուրամյա այս ձեռնարկության կոլեկտիվն այսօր ներկայացնում է 19 ազգերի ու ազգությունների:

Կոլեկտիվում մեծ հեղինակություն են վայելում Շամլուղի հանքերի անվանի հորատող, ուկրաինացի Իվան Զինչենկոն, ձուլարանի արտադրամասի պետ, հույն Իվան Լազարևը, պղնձի ռաֆինացման արտադրամասի մեխանիկ, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր, վրացի Գեորգի Տարխնիշվիլին, Ախթալայի հանքերի հորատող, ադրբեջանցի Մուստաֆա Ասկյարովը, ծծմբաթթվի արտադրամասի առաջավոր բանվոր, տաջիկ Անվար Խամիդովը, Շամլուղի հանքերում աշխատանքային հիանալի ուղի անցած, Լենինի շքանշանակիր, իտալացի Իվան Սիստին, ձուլող բանվոր, սոցիալիստական աշխատանքի հերոս Արշակ Ղազարյանը և շատ ուրիշներ: Միասնական նպատակը, համատեղ աշխատանքը, միևնույն իղձերի ու նպատակների համար պայքարը համերաշխ մի ընտանիք են դարձրել ողջ կոլեկտիվին:

Կոմբինատում շատ են բրիգադները, արտադրամասերը, ուր կողք-կողքի արդեն երկար տարիներ աշխատում են մի շարք ազգերի ներկայացուցիչներ: Ախթալայի հանքերում գովեստով են խոսում Պյոտր Գարգալաջևի հորատողների ինտերնացիոնալ բրիգադի մասին: Բրիգադի անդամներից Վալիկո Վախանեևը հույն է, Մուստաֆա Ասկյարովը՝ ադրբեջանցի, Սեդրակ Քոչինյանը՝ հայ: Մրցության մեջ մտնելով Ապրո Պապյանի հորատողների՝ նույնպես ինտերնացիոնալ կոմպլեքսային բրիգադայի հետ, Պ. Գարգալաջևի բրիգադան ժամկետից շուտ կատարեց անցած հնգամյակի առաջադրանքները և մեծ արտադրողականությամբ է աշխատում նաև ընթացիկ տարում:

Աշխատելով ստորերկրյա խոր հորիզոններում, մշտապես զգալով միմյանց



օգնությունն ու աջակցությունը, մարդիկ մտերմացել են, դարձել հարազատներ: Նրանք միասին են բաժանում թե՛ ուրախությունը, թե՛ տխրությունը, զորավիգ լինում դժվարին պահերին:

— Եթե ուզում եք ազգերի մեծ բարեկամություն տեսնել,— ասում է Շամլուղի հանքերի երկրաբան Անդրեյ Տերյաևը,— եկեք հանքագործների մեր ինտերնացիոնալ ավանը, ուր ապրում և աշխատում են տասնմեկ ազգերի ներկայացուցիչներ: Տարբեր ազգերի մարդիկ այնպես են կապվել իրար, այնպես են զգում մեկը մյուսի կարիքը, որ դժվար է միմյանցից բաժանվել: Դրա հետ մեկտեղ, մեր կողքին ծնունդ է առնում մի ավելի թանկ բարեկամություն, երեխաների բարեկամությունը: Սիրտդ հրճվանքով է լցվում, երբ տեսնում ես տարբեր ազգերի երեխաների սրտառուչ մտերմությունը:

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Ռեզվեր Ավագյանի հորատողների կոմպլեքսային բրիգադան բաղկացած է հայ, ռուս, ադրբեջանցի, հույն հորատողներից: Բրիգադան անցած հնգամյակն ավարտել է չորսուկես տարում, լավ մեկնարկ է վերցրել տասներորդ հնգամյակում և այս տարվա անցած ամիսների առաջադրանքները կատարել 110—115 տոկոսով: Երբ հարցնում ենք, թե ինչն է հաջողության պատճառը, Ռ. Ավագյանը պատասխանում է.

— Նպատակների միասնությունը: Մեզանից յուրաքանչյուրը ձգտում է աշխատել ավելի լավ, պարզերես լինել ընկերների առջև: Սովորել ենք միմյանց լեզուն, խոսում ենք և՛ հայերեն, և՛ ռուսերեն, և՛ ադրբեջաներեն, և՛ հունարեն: Ամենալավ բարեկամությունը աշխատանքային բարեկամությունն է...

Կոմբինատում բարեկամության ամրապնդման գործում մեծ վաստակ ունեն սկզբնական կուսկազմակերպությունը, ձեռնարկության կուսակցական կոմիտեն: Միայն վերջին երկու տարում կոմիտեն մի քանի անգամ քննարկել է աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության բարելավման, նրանց կոմունիստական դաստիարակության հարցերը: Կոմբինատի տեսական ու պրոբլեմային սեմինարներում, քաղաքական լուսավորության դպրոցներում խորությամբ ուսումնասիրվում է ազգային հարցի մարքս-լենինյան տեսությունը, պրոպագանդիստների համար հրավիրվում են այդ թեմաներով տեսական կոնֆերանսներ, արտադրամասերում, բրիգադներում հաճախակի կազմակերպվում են ժողովուրդների բարեկամությանը նվիրված դասախոսություններ, զեկուցումներ, զրույցներ: Առանձնապես բարեկամական ջերմ մթնոլորտում են անցնում կոմբինատի կուսկոմիտեի նախաձեռնությամբ Ալավերդու, Ախթալա, Շամլուղ ավաններում կազմակերպվող «Ինտերնացիոնալ կոլեկտիվի արժանավոր զավակները» թեմատիկ երեկոները, որտեղ անկաշկանդ զրույց է ծավալվում տարբեր ազգերի ներկայացուցիչների մեծ բարեկամության, աշխատանքում ծնված մտերմության մասին, խրախուսվում են արտադրության առաջավորները:

Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության կազմակերպման ու ղեկավարման ասպարեզում նկատելի գործ է արվել Ալավերդու կարի ֆաբրիկայի բազմազգ կոլեկտիվում: Այստեղ կուսբյուրոյի նախաձեռնությամբ կազմակերպվել են «ՍՍՀՄ ժողովուրդների միասնական ընտանիքում», «Անդրկովկասի ժողովուրդների մեծ բարեկամությունը» թեմաներով դասախոսությունների ցիկլեր, զեկուցումներ, զրույցներ, կնոջ միջազգային տարվա առթիվ երեկոներ՝ «Բոլորս քույրեր ենք, հարազատներ», «Կլոր սեղանի շուրջն են հինգ ազգերի դուստրերը»: Ցուցադրական ագիտացիայի միջոցներով արտացոլվում են հայ, հույն, ադրբեջանցի, վրացի, ռուս առաջավոր բանվորների առօրյան, աշխատանքում ծնված նրանց մեծ բարեկամությունը:

Ֆաբրիկան այսօր իր 25 արտադրատեսակները առաքում է ՌՍՖՍՀ-ի, Ուկրաինայի, Ղազախստանի, Ուզբեկստանի, Հայաստանի ավելի քան 40 առևտրական կազմակերպությունների: Օրավուր աճում է պատվիրատուների թիվը: Դա կոլեկտիվին պարտավորեցնում է տալ է՛լ ավելի բարձրորակ և բազմազան արտադրանք: Ելնելով դրանից՝ կուսբյուրոն, հասարակական կազմակերպությունները աշխատավորների մեջ ձգտում են սերմանել այն գիտակցությունը, որ յուրաքանչյուր աշխատողի անձնական ավանդը ինտերնացիոնալ պարտքի կա-

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԱՌԱՋԱՎՈՐ ՏԵԽՆՈԼՈԳԻԱՅԻ ՈՒՂԻՈՎ

**Վ. Բ. ՈՍԿԱՆՅԱՆ**
Գյուղատնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ԻՆՏԵՆՍԻՎԱՑՈՒՄ՝ ԱՀԱ ՋԱՐԳԱՑՄԱՆ այն գլխավոր ուղին, որով տասներորդ հնգամյակում ընթանում են մեր երկրի ժողովրդական տնտեսության ճյուղերը: Բացառություն չէ և անասնաբուծությունը: «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղություններում» նշված է, որ մսի, կաթի, ձվի, բրդի և մյուս մթերքների արտադրության հետագա ավելացումը կապահովվի անասունների և թռչունների մթերատվության բարձրացմամբ, դրանց գլխաքանակի աճով, կերի արդյունավետ օգտագործմամբ, տոհմային աշխատանքի կատարելագործմամբ, աշխատանքի մեքենայացմամբ և առաջադիմական տեխնոլոգիայի արմատավորմամբ:*

*Անասնաբուծության հետագա վերելքի համար, ինչպես ՍՄԿԿ XXV համագումարում նշեց Լ. Ի. Բրեժնևը, կարևոր նշանակություն ունի արդյունաբերական հիմունքներով մթերքների արտադրության լայն արմատավորումը: Անասնաբուծական մթերքների արտադրության պետական և միջտնտեսային խոշոր համալիրներն ու ֆաբրիկաները այն հիմքն են, որի վրա իրագործվում են արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը: Անցած հնգամյակում Սովետական Միությունում ստեղծվել են անասնաբուծական 1.170 համալիրներ: Ինտենսիվացման ուղիով է զարգանում անասնաբուծությունը նաև մեր հանրապետությունում: Այժմ մեզ մոտ գործում են թռչնաբուծական մի շարք ֆաբրիկաներ, շահագործման են հանձնվել Սովետաշենի խոզաբուծական ֆաբրիկան և Ջրառատի կաթի արտադրության համալիրը: Այս տարի կավարտվի Եղվարդի համալիրի կառուցումը տավարի 10 հազար գլուխ մատղաշի աճեցման և բտման համար, կգործարկվեն Թալինի խոզաբուծական ֆաբրիկաները 54 և 24 հազար գլխի համար: Ավելի ծավալուն են տասներորդ հնգամյակի պլանները: Բավական է ասել, որ 1976—1980 թվականներին կկառուցվեն կաթի արտադրության 15 համալիրներ, մատղաշի աճեցման միջտնտեսային բազմաթիվ ձեռնարկություններ և այլն: Այս ամենը որակական նոր փուլ են նշանավորում անասնաբուծության զարգացման ասպարեզում:*

*ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման հետագա զարգացման մասին» որոշման մեջ ասված է. «Արտադրաուժերի հետագա զարգացումը օբյեկտիվորեն պահանջում է սկզբունքորեն նոր մոտեցում գյուղատնտեսական արտադրության կազմակերպմանը, նրա առավել խոր մասնագիտացում, տնտեսությունների ջանքերի միավորում՝ գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները լայնորեն օգտագործելու նպատակով»:*



*Գյուղատնտեսության կոոպերացման և մասնագիտացման նպատակն է՝ արտադրությունը կազմակերպել ժամանակակից տեխնիկական հիմքի վրա, կիրառելով ինդուստրիալ մեթոդներ և առաջավոր տեխնոլոգիա, մի բան, որը հաճախ անմատչելի է և անշահավետ նույնիսկ խոշոր տնտեսությունների համար:*

*ԱՆԱՍՆԱԲՈՒԾԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ արդի փուլում չափազանց կարևոր են դառնում և մեծ նշանակություն ստանում տեխնոլոգիական հարցերը: Տեխնոլոգիան այն համընդհանուրն է, որը միավորում է նյութական բարիքների արտադրությանը ծառայող բոլոր միջոցները: Ինչպես հայտնի է, արտադրության առավել հին ճյուղերը զարգացել են ավելի դանդաղ ու աչքի ընկել պահպանողական, պարզունակ տեխնոլոգիայով: Մինչդեռ արտադրության նոր ճյուղերը առաջավոր տեխնոլոգիայի շնորհիվ զարգանում են ավելի արագ:*

*Անասնաբուծությունը նյութական բարիքների ստեղծման հնագույն ճյուղերից է և զարգացել է շատ դանդաղ: Այժմ, երբ աճել են հասարակության նյութական պահանջմունքները, դրանք այլևս հնարավոր չէ բավարարել արտադրության հին, ավանդական տեխնոլոգիայի շրջանակներում: «Մարդ-գյուղատնտեսական կենդանի» նախկին տեխնոլոգիական սխեման այժմ փոխարինվել է նոր՝ «մարդ-մեքենա-գյուղատնտեսական կենդանի», «մարդ-ավտոմատ-սիստեմ-գյուղատնտեսական կենդանի» սխեմայով:*

*Նոր տեխնոլոգիայի մուտքն անասնաբուծության մեջ կապված է եղել որոշակի դժվարությունների հետ: Հիմնական արտադրամիջոցն այստեղ գյուղատնտեսական կենդանին է: Մեքենայական ներգործությունը կենդանու վրա հարուցում է որոշակի դժվարություններ, որոնք կարելի է հաղթահարել միայն գիտության ու տեխնիկայի կատարելագործված համագործակցությամբ: Անասնաբուծական մթերքների արտադրության տեխնոլոգիան ավելի ճիշտ կլինի կոչել բիոտեխնոլոգիա, քանի որ այն վերաբերվում է կենդանուն՝ որպես արտադրամիջոցի: Բիոտեխնոլոգիական հարցերի մշակումը և դրանց ճիշտ լուծումն այժմ անասնաբուծական արտադրության զարգացման ամենահրատապ պրոբլեմներից է: Անասնաբուծական արտադրության տեխնոլոգիան այսօր իր մասշտաբայնությամբ և խորությամբ հասել է ինդուստրիալ արտադրության տեխնոլոգիայի մակարդակին: Այդ տեխնոլոգիան, ընդգրկելով գիտության ու տեխնիկայի բազում ճյուղերի նվաճումները, զգալիորեն նպաստում է անասնաբուծական մթերքների արտադրության ավելացմանը, դրանց որակի բարձրացմանը:*

*Նոր, առաջավոր տեխնոլոգիայի մշակումը և կիրառումը մեր երկրում անասնաբուծության հետագա զարգացման ամենակարևոր խնդիրներից մեկն է: Այն այժմ սննդանյութերի արտադրության պրոբլեմի ամբողջական լուծման էական օղակներից է: Խնդիր է դրված, որպեսզի տասներորդ հնգամյակի վերջում արդեն երկիրն ունենա անասնաբուծական համալիրների, միջտնտեսային ձեռնարկությունների, մեքենայացված ֆերմաների բազմակողմանի մշակված և փորձարկված նախագծեր՝ տարբեր պայմաններին համապատասխան տեխնոլոգիական լուծումներով:*

*Հարկ է նշել, որ տեխնոլոգիայի մշակումը պետք է բխի տվյալ տեսակի անասնաբուծական մթերքի արտադրության առանձնահատկություններից և համապատասխանի ինդուստրացման միջոցով դրա ինտենսիվ զարգացմանը: Ինչպես ամբողջ Միությունում, այնպես էլ մեր հանրապետությունում, արտադրության ինդուստրացումը պետք է կատարվի ո՛չ միայն պետական համալիրների ստեղծմամբ, ինչպես կարծում են ոմանք, այլև միջտնտեսային կոոպերացմամբ, կոլտնտեսային և սովխոզային ֆերմաների ամբողջական մեքենայացմամբ:*

*ԱՆԱՍՆԱԲՈՒԾԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ինդուստրացումը հնարավոր է իրականացնել միայն որոշակի մասշտաբների առկայության դեպքում իսկ մնացած բոլոր բարենպաստ պայմաններում որքան մեծ լինեն այդ մաս-*

շտաբները, այնքան ավելին կլինեն արտադրողականության բարձրացման հնարավորությունները: Սակայն կան նաև արտադրության կազմակերպման մասշտաբները սահմանափակող բազմաթիվ հանգամանքներ, դրանցից մեկը տվյալ ճյուղի առանձնահատկությունն է:

Տավարաբուծության մեջ համալիրների և մեքենայացված ֆերմաների մասշտաբները պայմանավորված են մեծ չափերով կոպիտ և հյութալի կերի արտադրության հնարավորություններով, արոտների օգտագործման անհրաժեշտությամբ, ինչպես նաև տավարի կենսաբանական մի շարք առանձնահատկություններով: Անասնաբուծության այս ճյուղում ավելի խոշոր մասշտաբներ ունեն մսի արտադրության համալիրներն ու ֆերմաները: Սովետական Միությունում արդեն գործում են 10 հազար գլուխ մատղաշի աճեցման համալիրներ, կառուցվում են և գործում 20 և 30 հազար գլուխ մատղաշի բտման հրապարակներ:

Ավելի բարդ է կաթնային տավարաբուծության հարցը: Այստեղ կենդանիների օգտագործման տևողությունը մեքենայական ներգործության պայմաններում պահանջում է հատուկ խնամք ինչպես կովերի, այնպես էլ վերարտադրության նպատակով աճեցվող մատղաշի նկատմամբ: Ներկայումս մեր երկրում գործում է համամիութենական անասնաբուծության գիտահետազոտական ինստիտուտի ենթակայության տակ գտնվող «Շչապովո» համալիրը՝ 2.000 կովի համար: Մի շարք մարզերում նախագծվում են համալիրներ 3.000-ից մինչև 5.000 կովի համար: Կան ենթադրություններ, որոնց համաձայն մեր երկրում մինչև դարի վերջը կարող են կառուցվել կաթնային համալիրներ 10—15 հազար գլուխ կովի համար: Շվեդական «Ալֆա-լավալ» ֆիրման ենթադրում է այդ թիվը հասցնել 30—35 հազարի: Սակայն այժմ գիտության ու արտադրության փորձը ցույց է տալիս, որ կաթնային համալիրներում և ֆերմաներում կենդանիների կենտրոնացման օպտիմալ հնարավորությունները իրականում ավելի սահմանափակ են:

Կաթի արդյունաբերական արտադրության հարցերին նվիրված 1975 թ. համամիութենական խորհրդակցության ընդունած հանձնարարականներում Սովետական Միության տարբեր շրջանների համար պետական համալիրների ընդունելի չափերը սահմանվեց 800—2.000, մեքենայացված ֆերմաներինը՝ 400—1.200 գլուխ կովերի համար:

Նույն հանձնարարականներում ընդունվեց հայկական անասնաբուծության և անասնաբուժության գիտահետազոտական ինստիտուտի ներկայացրած առաջարկը՝ Անդրկովկասյան հանրապետությունների պայմաններում կառուցել համալիրներ 800—1.200, իսկ մեքենայացված ֆերմաները՝ 400—800 գլուխ կովերի համար: Համալիրների ու ֆերմաների այդ չափերը համապատասխանում են մեր հանրապետության բնական պայմաններին և միաժամանակ հնարավորություն կընձեռեն զգալիորեն համակենտրոնացնելու կաթի արտադրությունը: Վերարտադրության նպատակով աճեցվող էգ մատղաշի համալիրները կարող են լինել 3.000, իսկ առանձին դեպքերում՝ 6.000 գլխի համար: Միջտնտեսային ձեռնարկությունների ծավալը կորոշվի տվյալ շրջանի տնտեսությունների նախրի վերարտադրության պահանջներով և կարող է լինել ավելի փոքր:

Անասնաբուծական արտադրության տեխնոլոգիայի կարևոր հարցերից է կենդանիների պահվածքի սիստեմը: Տավարաբուծության մեջ կիրառվում է պահվածքի երկու սիստեմ՝ կապած և չկապած: Վերջինս ունի անվիճելի առավելություններ. այն ավելի է համապատասխանում կենդանու կենսաբանական պահանջներին, միաժամանակ 1,7—2 անգամ կրճատվում են սպասարկման ծախսերը: Երկրի բոլոր գոտիների, այդ թվում մեր հանրապետության համար նախապատվություն պետք է տալ չկապած բոքսային սիստեմին:

Արդյունաբերական տեխնոլոգիայի պայմաններում կիրառվում է ամառային պահվածքի երեք սիստեմ՝ արոտային, մսուրային և արոտամսուրային:

Մեր հանրապետության հարթավայրային, մասնավորապես Արարատյան դաշտավայրի պայմաններում ավելի նպատակահարմար է մսուրային և մսուրաճամբարային պահվածքը: Լեռնային շրջաններում, անշուշտ, ավելի նպա-



տակահարմար է արոտային պահվածքը, որը պետք է խարսխվի կուլտուրական արոտների ստեղծման վրա:

Համալիրների և մեքենայացված ֆերմաների ստեղծման համար անհրաժեշտ է նախիրն ամբողջ տարին ապահովել կերով: Այդ պատճառով էլ դրանց ստեղծումը պետք է սկսվի կերի բազայի կազմակերպումից:

ՏԵԽՆՈԼՈԳԻԱԿԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՀԱՐՑ է և նախրի կազմակերպումն ու տոհմային աշխատանքի ճիշտ վարումը: Աննպատակահարմար և անընդունելի է համալիրներում ու մեքենայացված ֆերմաներում ցածր մթերատու կենդանիներ պահելը: Համալիրներն իրենց լիովին արդարացնում են կովերի տարեկան 3.500 կգ-ից ավելի բարձր կաթնատվության դեպքում:

Մեր երկիրը շատ հարուստ է տավարի կաթնատու և կաթնամսատու ցեղերով: Բավական է ասել, որ աշխարհում եղած տավարի 500 ցեղերից 50-ից ավելին բուծվում են մեր երկրում: Սակայն արդյունաբերական տեխնոլոգիայի պայմաններին լրիվ համապատասխանող ցեղերի թիվը խիստ սահմանափակ է: Մեքենայական տեխնոլոգիայի գլխավոր պահանջներն են՝ նախրի բարձր մթերատվությունը, դրա դրսևորման համար պահանջվող կենդանի քաշը, կենդանիների միատիպությունը, ներվային հավասարակշռությունը, համակազմության ամրությունը:

Ցավոք, այդ պահանջներին բավարարող ցեղերի թիվը մեծ չէ: Համեմատաբար տարածված ցեղերից միայն սևաբղետն է համապատասխանում մեքենայական տեխնոլոգիայի պահանջներին: Կան նաև ավելի մթերատու ցեղեր, ինչպես հոլշտինաֆրիզյանը, սակայն դրանց գլխաքանակը մեր երկրում շատ քիչ է:

Հասկանալի է, որ միայն սևաբղետ ցեղի կենդանիներով հնարավոր չէ կոմպլեկտավորել երկրում կառուցվող բոլոր համալիրները և մեքենայացված ֆերմաները: Մինչդեռ մեզ մոտ կան ցեղային հսկայական ռեսուրսներ:

Այժմ հարց է դրված մի շարք արժեքավոր ցեղերի (սիմենթալ, շվից և այլն) տոհմային և մթերատու արժանիքների ճիշտ օգտագործմամբ ստեղծել արդյունաբերական տեխնոլոգիայի պահանջները բավարարող նոր տիպեր և ցեղեր: Մեր հանրապետությունում բուծվող հիմնական պլանային՝ կովկասյան գորշ ցեղն ունի կոմբինացված ուղղություն: Նրա մոտ հավասարաչափ զարգացած են կաթնային և մսային հատկությունները: Ուստի, այն չի կարող լիովին համապատասխանել կաթի արտադրության մեքենայական տեխնոլոգիայի պահանջներին: Սակայն բացառել դրա օգտագործման լայն հնարավորությունները բոլորովին սխալ կլինի և վնասակար: Նախ, նշենք, որ հենց հիմա էլ կովկասյան գորշ ցեղը բարենպաստ կերային պայմաններում աչքի է ընկնում բարձր կաթնատվությամբ: Օրինակ, Աբովյանի շրջանի Կոտայք գյուղի Կույբիշևի անվան կոլտնտեսության տոհմային ֆերմայի այդ ցեղի երրորդ և բարձր լակտացիայի կովերի կաթնատվությունը 4.100 կգ-ից ավելի է, իսկ կաթի յուղայնությունը 3,94 տոկոս է, որը բարձր է ցեղի ստանդարտից: Առաջնակիթ կովերի կաթնատվությունն անցած հնգամյակում բարձրացել է. 1971 թ. 2.762 կգ-ից 1975 թ. հասել է 3.373 կգ-ի, որը արդյունք է կերակրման բարենպաստ պայմաններում կատարված սելեկցիոն տոհմային աշխատանքի: Այդ ֆերմայի նախրի կովերն ունեն 480—500 կգ կենդանի քաշ, պիրկ, ամուր համակազմություն և գերազանցորեն հարմարված են տեղական պայմաններին: Մեր կարծիքով, Կոտայքի կոլտնտեսության նախիրը հիմնականում համապատասխանում է քաղաքամերձ շրջանների պահանջներին և դրա ստեղծման փորձը պետք է լայնորեն կիրառվի:

Այժմ կովկասյան գորշ ցեղի բարելավումը քաղաքամերձ շրջաններում պետք է տարվի համալիրների և մեքենայացված ֆերմաների պայմաններում, բուծման համար պիտանի կաթնատու տիպի ստեղծման նպատակով: Գորշ ցեղերից ամենակաթնատուն ամերիկյանն է և նրա առավելությունների ճիշտ օգտագործումը, անշուշտ, կնպաստի կովկասյան գորշ ցեղի կաթնատվության

զգալի բարձրացմանը։ Այժմ այդ աշխատանքներն արդեն սկսված են Կալինինոյի շրջանի Կալինինի անվան տոհմային սովխոզում, մեր ինստիտուտի փորձնական տնտեսություններում՝ Լոռվա տոհմաբուծարանում ու փորձարարական բազայում, Ստեփանավանի պետական կայանի սպասարկման ցանցի և մի շարք այլ տնտեսություններում։ Հենց առաջին դրական արդյունքները հիմք կտան ավելի ընդարձակելու դրա օգտագործման շրջանակները, ընդգրկելով նախ քաղաքամերձ շրջանների կերային բավարար հնարավորություններ ունեցող տնտեսությունները։

Չի կարելի չանհանգստանալ նաև այն բանի համար, որ վերջին ժամանակներս կովկասյան ցեղի ցածր մթերատու լինելու պատրվակի տակ ներմուծվում են հանրապետության համար ոչ պլանային ցեղեր։ Եթե տարերային ներմուծումը շարունակվի, ապա մեծ վնաս կհասցվի տասնյակ տարիների ընթացքում ստեղծված կովկասյան գորշ ցեղի հետագա պլանային կատարելագործմանը։

ԱՆԱՍՆԱԲՈՒԾԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ արտադրությունն ավելացնելու գործում մեծ նշանակություն ունի նախրի կառուցվածքը, որտեղ անհրաժեշտ է ապահովել կովերի նորմալ տոկոսը։ Մատղաշի աճեցման և բտման պետական ու միջտնտեսային համալիրների ստեղծումը, ինչ խոսք, հնարավորություն կընձեռի զգալիորեն բարձրացնելու կովերի տոկոսը նախրում։ Սակայն այժմ ևս յուրաքանչյուր տնտեսություն կարող է և պետք է մտահոգվի բարձրացնելու կովերի տեսակարար կշիռը։ Դրա համար հարկավոր է կարգավորել նորոգման և մսացու մատղաշի աճեցման գործը, այսինքն՝ առաջինի ժամանակին փոխադրումը կովերի նախիրը, իսկ երկրորդի հանձնումը որպես մսացու։ Այս հարցն անմիջականորեն կապված է մատղաշի աճեցման տեխնոլոգիայի հետ։

Մեր հանրապետության շատ շրջաններում անուշադրության է մատնված հոտի վերարտադրության կարևոր մի հարց՝ նորոգման մատղաշի աճեցումը, որի անբավարար կազմակերպումը մեծ վնաս է հասցնում տնտեսություններին։ Այսպես, էգ մատղաշի վատ աճեցման և ժամանակին չսերմնավորելու հետևանքով կորցնում ենք մեկ ծին, հետևաբար՝ մեկ հորթ, մեկ կիթ, իսկ հանրապետության մասշտաբով դա տարեկան կազմում է մի քանի տասնյակ հազար հորթ և տասնյակ հազարավոր տոննա կաթ։

Ներկայումս մեր հանրապետությունում տավարաբուծության ինտենսիվացման և դրա վարման տեխնոլոգիայի ամենաանհետաձգելի խնդիրներից է նախրի նորոգման նպատակով մատղաշի աճեցման գործի բարելավումը։ Կովկասյան գորշ ցեղի մատղաշը ընդունակ է 18—20 ամսականում հասնել 350 կգ և ավելի բարձր կենդանի քաշի, տալ նորմալ սերունդ և ունենալ բարձր կաթնատվություն։ Այդ է վկայում առաջավոր տնտեսությունների փորձը։ Ըստ որում, նորոգման մատղաշի աճեցումը կապված չէ մեծ դժվարությունների հետ. նրանց կերի միայն 15—20 տոկոսը կարող է լինել համակցված, իսկ հիմնականը՝ 80—85 տոկոսը կազմում են կոպիտ, հյութալի կերը և արոտային կանաչը։

Շատ կարևոր է մատղաշի պահվածքի ճիշտ տեխնոլոգիայի կիրառումը։

Մինչև այժմ մեր հանրապետության տնտեսությունների մեծ մասում նորոգման մատղաշը աճեցվում է կապված վիճակում։ Այս պահվածքն ավանդական է, սակայն բացասական հետևանքներ է թողնում մատղաշի աճի ու զարգացման վրա։

Առաջավոր տնտեսությունների փորձով ապացուցված է չկապված պահվածքի առավելությունները։ Այն հեշտացնում է աշխատատար պրոցեսների մեքենայացումը, կրճատում արտադրական ծախսերը, բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը, կենդանիների համար ստեղծում անկաշկանդ շարժվելու հնարավորություններ, մի բան, որ նպաստում է նրանց նորմալ աճին ու զարգացմանը, ամուր համակազմության ձևավորմանը։

Մեծ է տավարի մսի արտադրության առաջավոր տեխնոլոգիայի կիրառման կարևորությունը կաթնային և կաթնամսային տավարաբուծության մեջ, որից ստացվում է արտադրվող մսի հիմնական մասը։



Մեր երկրում մսի արտադրության բալանսում տավարի մսի բաժինը կազմում է 43—44 տոկոս, 1966—1974 թթ. տավարի մսի արտադրությունը 3,9 մլն տոննայից հասել է 6,4 մլն տոննայի (սպանդային քաշով) կամ աճել 63 տոկոսով։ Այդ աճը ձեռք է բերվել ինչպես անասունների գլխաքանակի ավելացման, այնպես էլ արտադրության ինտենսիվացման հաշվին։ Պետությանը վաճառված անասունների մեկ գլխի միջին կենդանի քաշը 1966 թ. 253 կգ-ից 1974 թ. հասել է 332 կգ-ի։

Մեր հանրապետությունում ևս մսի արտադրության ընդհանուր բալանսում տավարի միսն ունի գերակշռող ծավալ և տեսակարար կշիռ։ Այսպես, 1966 թ. արտադրվել է 32,3 հազար տոննա տավարի միս, կամ ընդհանուր արտադրանքի 44,7 տոկոսը, 1975 թ. համապատասխանաբար՝ 52,2 հազար տոննա և 43,4 տոկոս։ Մեկ գլխի կենդանի քաշը այդ ժամանակաշրջանում 202 կգ-ից հասել է 244 կգ-ի։ Հանրապետությունում, այսպիսով, տավարի մսի արտադրության ինտենսիվացման տեմպերը, Միության միջինի հետ համեմատած, ավելի ցածր են։ Նշենք, որ բարձր կենդանի քաշի առավելությունը համեմատած ցածրի հետ, ոչ միայն բացարձակ է, այլև հարաբերական։ Օրինակ, մինչև 200 կգ կենդանի քաշ ունեցող, կերակրման անբավարար պայմաններում աճեցված մատղաշի մսեղիքի ելունքը չի անցնում 46 տոկոսից, իսկ մեկ կգ ոսկրին ընկնում է 3 կգ միս, այն դեպքում, երբ 450 կգ-ից բարձր կենդանի քաշ ունեցող մատղաշի մոտ այդ ցուցանիշները համապատասխանաբար կազմում են՝ 55 և 5։

Ներկայումս տավարի մսի արտադրության ինտենսիվացման գլխավոր տենդենցն աստիճանաբար այն արդյունաբերական տեխնոլոգիայի փոխադրելն է, որն իրականացվում է ինչպես պետական և միջտնտեսային համալիրների ստեղծմամբ, այնպես էլ ներտնտեսային մասնագիտացմամբ։ Մեծ տարածում են ստացել միջտնտեսային համալիրները, սակայն այստեղ թույլ են տրվում բազմաթիվ նախագծային և տեխնոլոգիական շեղումներ, որոնք չեն կարող բացասական հետևանքներ չունենալ և առաջիկայում պետք է անպայման շտկվեն։

Մեր հանրապետության համար հեռանկարային են ինչպես պետական, այնպես էլ միջտնտեսային համալիրների ստեղծումը։ Արդյունաբերական տեխնոլոգիայի կիրառումը նախ և առաջ պետք է վերաբերվի կերարտադրության կազմակերպմանը, ըստ որում, բոլոր դեպքերում կերի հիմնական մասն անհրաժեշտ է արտադրել տեղում։ Աճեցման և բտման տևողության ու ինտենսիվացման առումով, նպատակահարմար է կիրառել երկու եղանակ։ Մի դեպքում աճեցումը և բտումը կատարվում է ավելի ինտենսիվ։ Պահվածքը մսուրային է, որը պետք է հենվի ինտենսիվ կերարտադրության վրա։ Կենդանիները հանձնվում են 13—14 ամսում 350 կգ-ից բարձր կենդանի քաշով։ Երկրորդ դեպքում աճեցումը և բտումը կատարվում է արոտների օգտագործմամբ, որը հնարավորություն է ընձեռում իջեցնելու մեկ միավոր քաշաճի վրա կատարվող կերի ծախսը։ Կենդանիները հանվում են բտումից 16—18 ամսականում ու հանձնվում 400 կգ և ավելի քաշով։

Միութենական հանձնարարականներով պետական և միջտնտեսային համալիրների ծավալը որոշված է 3.000, 6.000, 9.000 և 12.000 գլխի համար։ Հասկանալի է, որ մեր հանրապետության պայմաններին համապատասխանում են ավելի փոքր համալիրներ՝ 3.000 և 6.000 գլխի համար։ Միջտնտեսային համալիրներն առանձին դեպքում կարող են ավելի փոքր լինել։ Հանրապետությունում մսի արտադրության ավելացման առումով մեծ նշանակություն ունի Եղվարդում կառուցվող 10 հազար գլուխ մատղաշի աճեցման և բտման համալիրը։ Այստեղ մատղաշի աճեցման ու բտման տեխնոլոգիան բավական բարդ է և եթե այն հաջողությամբ յուրացվի, ապա լավ փորձ կհանդիսանա ողջ հանրապետության համար։

Նոր հնգամյակում մեծ ու պատասխանատու խնդիրներ են դրված անասնաբուծական արտադրության աշխատողների առջև։ Դրանց հաջող լուծումը և հնգամյա պլանի անթերի կատարումը պահանջում են լայն ճանապարհ տալ առաջավոր տեխնոլոգիային և, դրանով իսկ, ապահովել անասնաբուծական մթերքների արտադրության շեշտակի ավելացումն ու որակի բարձրացումը։

# ՊՈԼԻԳՐԱՖ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

**Մ. Պ. ՍԱՐԳՍՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության գլխավոր ինժեներ

*ԳՐԱՏՊՈՒԹՅԱՆ ԳՈՒՏԵՄԲԵՐԳՅԱՆ գյուտից հետո պոլիգրաֆիական տեխնիկան անցել է երկար ուղի: Այն հարստացել է արագ շարող և տպագրող ավտոմատներով, բարդ ագրեգատներով, որոնք ունակ են մի քանի օրում պատրաստելու հարյուր հազարավոր գրքեր: Այնպես որ, այսօրվա տեխնիկան անհամեմատելի է այն ժամանակների տեխնիկայի հետ: Մեր օրերում պոլիգրաֆիական տեխնիկան որակական փոփոխություններ է կրում արդեն ոչ թե տասնամյակների ընթացքում, այլ ժամանակի շատ ավելի փոքր հատվածներում: Արդի տեխնիկան, օրինակ, դժվար է համեմատել նույնիսկ 60-ական թվականների տեխնիկայի հետ:*

*Պետք է նշել, սակայն, որ տեխնիկայի զարգացումն ինքնին դեռևս չի լուծում պոլիգրաֆարդյունաբերության արտադրության կարևորագույն հարցը՝ գրքարտադրության ժամկետների կրճատումը: Այսպես, մեր հանրապետությունում պոլիգրաֆարդյունաբերության ֆոնդազինվածությունը 1975 թ., 1971-ի համեմատությամբ, աճել է 46, էլեկտրազինվածությունը՝ 38 տոկոսով: Մինչդեռ արտադրությունն ավելացել է ընդամենը 23 տոկոսով, ֆոնդահատույցը 1971 թ. 80 կոպեկից 1975 թ. իջել է 63-ի: Աշխատանքի արտադրողականությունը նույն ժամանակամիջոցում ավելացել է 17 տոկոսով: Եվ դա այն դեպքում, երբ աշխատողների ընդհանուր թիվն ավելացել է 5, իսկ բանվորներինը՝ 7 տոկոսով: № 1 տպարանում արտադրաֆոնդերն ավելացել են մոտ 20, իսկ արտադրանքը՝ ընդամենը 10 տոկոսով: Ֆոնդազինվածությունն ավելացել է 30 տոկոսով, այդ թվում՝ էլեկտրազինվածությունը՝ 3 անգամ, իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ ընդամենը 18 տոկոսով: 1975 թ., 1971-ի համեմատությամբ, ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում ֆոնդազինվածությունն աճել է 11,3, աշխատանքի արտադրողականությունը՝ 28 տոկոսով, ֆոնդահատույցը 51,2 կոպեկից հասել է 57 կոպեկի:*

*Այս ամենը ցույց է տալիս, որ դեռևս կան զգալի ռեզերվներ արտադրության արդյունավետության բարձրացման նպատակով եղած տեխնիկան ավելի ռացիոնալ օգտագործելու համար, Ինչպես տեսնում ենք, արտադրության կազմակերպման մակարդակը դեռևս զգալիորեն ետ է մնում տեխնիկական զինվածության մակարդակից:*

*ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղություններում կոնկրետ խնդիրներ են առաջադրված հրատարակչությունների, գրքի առևտրի և պոլիգրաֆարդյունաբերության աշխատողներին— բարելավել հրատարակչական գործը և գրքի առևտուրը, ավելացնել գրքերի, թերթերի ու հանդեսների լույսընծայումը և բարձրացնել դրանց հրատարակման որակը, հատուկ ուշադրություն նվիրել դասագրքերի, մանկապատանեկան գրականության լույսընծայմանը, պոլիգրաֆիական արդյունաբերության մեջ ավելի լայնորեն արմատավորել տպագրության օֆսետային եղանակը, ֆոտոշարվածքը և ավտոմատ հոսքային գծերը:*

*Հրատարակիչների և պոլիգրաֆիստների առջև կուսակցության դրած այս պատասխանատու խնդիրների լուծման համար անհրաժեշտ են համատեղ ջանքեր նոր տեխնիկայի ներդրման, արտադրության կազմակերպման կատարելագործման և արդյունավետության բարձրացման ասպարեզներում:*

*ՄԵՐ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ ՊՈԼԻԳՐԱՖԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ մեջ աշխատանքի կազմակերպման մասին պատկերացում տալու համար նախ անդրադառնանք հրատարակչական պրոցեսների կազմակերպման հարցին: Ինչպես վերը նշեցինք, պոլիգրաֆիական մեքենաների արտադրողականությունն ավելացել է տասնյակ և հարյուրավոր անգամ, իսկ տպարանում արտադրանքի թողարկման տևողությունը համապատասխանաբար չի կրճատվել:*

*Եթե ուշադիր հետևենք այդ պրոցեսին և հաշվենք, թե ինչի՞ց են կուտակվում գրքերի՝ տպարաններում գտնվելու երկար ամիսները, կպարզվի, որ գրքի շարվածքի, տպագրության, կազմարարական աշխատանքի համար օգտագործվում է այդ «երկար ամիսների» միայն 15 տոկոսը: Ժամանակի մեծ մասը կլանում են արտադրապրոցեսների բազում ընդհատումները, որովհետև մեր տպարաններում ապահովված չէ արտադրապրոցեսների անընդմեջությունը՝ արտադրության ճիշտ կազմակերպման այդ կարևոր գործոնը: Այս պայմաններում նոր տեխնիկայի կիրառումը և բոլոր տեղամասերի կոմպլեքսային մեքենայացումը էապես չեն ներգործում արտադրանքի՝ տպարանից դուրս գալու ժամկետի վրա:*

*Մեր հանրապետությունում հրատարակչական-խմբագրական պրոցեսների կազմակերպման առկա ձևն ստեղծվել է դեռ այն ժամանակ, երբ տպարաններում գերակշռել է ձեռքի աշխատանքը: Շարվածքային պրոցեսների մեքենայացումից հետո (1880 թ.) ձեռագիր-բնագրերը, որոնք համապատասխանում էին ձեռքի շարվածքի տեխնիկային, դարձան սակավ պիտանի շարող բարձրարտադրողական մեքենաների համար. ձեռագիր-բնագիրը փոխարինվեց մեքենագրով: Այն ժամանակներից ի վեր բնագրերի պատրաստման տեխնիկան բազմիցս փոփոխվել է, սակայն մեր հրատարակչություններում և խմբագրություններում մնում է նույնը:*

*Վերջին տասնամյակներում, պոլիգրաֆիական տեխնիկայի բուռն վերելքին համապատասխան, հրատարակչական տեխնիկայի առջև ծառացան նոր խնդիրներ՝ կապված արդեն ոչ թե շարվածքի մեքենայացման, այլ արտադրության նորովի կազմակերպման հետ, որի հիմքում ընկած են արտադրապրոցեսների անընդմեջությունն ու ավտոմատացումը: Ժամանակակից արտադրության այս կարևորագույն առանձնահատկություններին չի համապատասխանում հրատարակչական-խմբագրական պրոցեսների կազմակերպման՝ մեզ մոտ գոյություն ունեցող ձևը, որի հիմքը սրբագրական օտիսկների փոխանակումն է տպարանների և խմբագրությունների միջև:*

*Ընդմիջումները սրբագրական օտիսկների փոխանակումների ժամանակ անխուսափելի են: Երբ սրբագրական օտիսկները գտնվում են հրատարակչությունում կամ խմբագրությունում, աշխատանքները գրքի վրա տպարանում դադարեցվում են: Հրատարակչական պրակտիկայում հաճախակի են սրբագրությունների ուշացումները, խմբագրական ու հեղինակային փոփոխումները և այլն: Տեխնոլոգիական պրոցեսների նման ընդհատումները խանգարում են տպարաններում կազմակերպելու գրքի անընդմեջ, հոսքային արտադրություն և հանդիսանում են արտադրության մեջ գրքի երկար մնալու գլխավոր պատճառը:*

*Պոլիգրաֆիայում գիտատեխնիկական առաջընթացի թելադրանքով ստեղծվեց նաև հրատարակչական համապատասխան տեխնիկա, որը հնարավորություն ընձեռեց հրաժարվելու սրբագրությունների փոխանակումից և արտադրություն իջեցվող բնագրերը միանգամից հանձնելու տպագրության: Հրատարակչական նոր տեխնիկայի շնորհիվ կարելի է արտադրության հանձնվող*

սովորական բնագրերից պատրաստել բնագիր-մակետ, որն իր կառուցվածքով ու տառատեսակներով նման է հրատարակվելիք գրքին: Բնագիր-մակետը լայն կիրառում ունի ինչպես արտասահմանում, նույնպես և մեր երկրի առաջավոր հրատարակչություններում ու տպարաններում: Սակայն մեր հանրապետության հրատարակչությունները համառորեն հրաժարվում են նման բնագրերի պատրաստման այս առաջավոր եղանակից և զգալիորեն դժվարացնում ժամանակակից պոլիգրաֆիական տեխնիկայով զինված տպարանների գործը:

Մոսկվայի տպարաններից մեկում կազմակերպվել է բնագիր-մակետով լույս տեսնող գրքերի ստուգում (բնագիր-մակետով լույս ընծայվող հրատարակությունները այստեղ կազմել են թողարկվող ողջ արտադրանքի 70 տոկոսը): Ստուգումը ցույց է տվել, որ բնագիր-մակետով պատրաստված գործերի արտադրության մեջ գտնվելու ժամանակամիջոցը 2,5 անգամ պակաս է սովորական եղանակով պատրաստված բնագրերի համեմատությամբ: Իսկ մեկ պայմանական մամուլ բնագիր-մակետի պատրաստման ժամանակը հրատարակչությունում ավելացել է 24 րոպեով: Այժմյան հրատարակչական նորագույն տեխնիկան հնարավորություն է ընձեռում պատրաստելու ծակոտաժապավենով ծրագրված բնագիր-մակետ, որը համապատասխանում է ավտոմատ լինոտիպերի, մոնոտիպերի և ֆոտոշարող մեքենաների շարվածքային տեխնիկային, որոնց արտադրողականությունն զգալիորեն բարձր է ոչ ավտոմատների համեմատությամբ: Ինչպես տեսնում ենք, նոր տիպի բնագրերի օգտագործումն զգալիորեն կրճատում է արտադրական ցիկլի տևողությունը:

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԱԶԴԵՑՈՒԹՅԱՄԲ մշտապես կատարելագործվում են տեխնիկան, արտադրության կազմակերպումը: Իսկ այդ, իր հերթին, էական ազդեցություն է թողնում տպարանների գործունեության քանակական ու որակական այնպիսի կարևորագույն ցուցանիշների վրա, ինչպիսիք են՝ արտադրանքի իրացման ծավալը, դրա ինքնարժեքն ու որակը, օգուտների գումարը և շահութաբերության մակարդակը, աշխատանքի արտադրողականությունը և այլն: Այսպիսով, նոր տեխնիկայի ներդրումը և արտադրության կազմակերպման կատարելագործումը ինչպես հանրապետության մասշտաբով, նույնպես և առանձին տպարաններում, պոլիգրաֆարդյունաբերության արդյունավետության բարձրացման կարևորագույն ազդակներն են: Արտադրության նյութական հիմքը տեխնիկան է, որի վիճակով և առաջընթացի աստիճանով է պայմանավորված արտադրության բնույթը: Տեխնիկայի կատարելագործումը տեխնոլոգիական նոր պրոցեսների կիրառման պայմաններ է ստեղծում: Առաջավոր տեխնոլոգիական պրոցեսն ընձեռում է տեխնիկայի օգտագործման որոշակի հնարավորություններ և ներգործում դրա բնույթի ու կազմի վրա: Արտադրության կատարելագործման պայմաններում առավել բարդ, լարված և անընդմեջ են դառնում արտադրապրոցեսները. փոխվում է մարդու դերը՝ որպես հիմնական արտադրաուժ: Առավել կարևոր է դառնում արտադրության կառավարման կատարելագործումը, որը հնարավորություն է ընձեռում ուղիներ փնտրելու առկա տեխնիկայի, նյութական, աշխատանքային ու ֆինանսական միջոցների ավելի արդյունավետ օգտագործման համար:

Այժմ ավելի, քան երբևէ, պլանների որակի մասին պետք է դատել ձեռք բերված արդյունքների խոր վերլուծությամբ: Առանց նման վերլուծության, դժվար է կազմել արտադրության արդյունավետության բարձրացման նպատակային, գիտականորեն հիմնավորված պլան, որը կկենտրոնացնի արտադրանքի որակի հետագա բարձրացման բոլոր միջոցառումները, առաջավոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորումը, արտադրության մեքենայացումն ու ավտոմատացումը, կառավարման սիստեմի կատարելագործումը, արտադրության պլանավորումն ու աշխատանքի գիտական կազմակերպումը: Սակայն մեր տպարանները նման վերլուծություն կատարելու համար իրենց տրամադրության տակ չունեն ո՛չ ցուցանիշների սիստեմ և ոչ էլ դրանց գործադրման մեթոդիկա: Այս հանգամանքը դժվարություններ է հարուցում արտադրության կազմակերպման ու տեխնիկական վիճակի գնահատման բնագավառում:



Կառավարման արդյունավետության բարձրացման կարևորագույն ուղերվ է նաև կառավարչական ապարատի կատարելագործումը, որն օգնում է լավագույն ձևով բաշխելու և կոոպերացնելու ինժեներա-տեխնիկական անձնակազմի ու ծառայողների աշխատանքը՝ անհրաժեշտ համամասնություն հաստատելով տարբեր կատեգորիաների մասնագետների միջև: Պոլիգրաֆիական ձեռնարկություններում կառավարման մակարդակը բնութագրող հիմնական ցուցանիշներ կարող են լինել ինժեներա-տեխնիկական աշխատողների ու ծառայողների տեսակարար կշիռը արդյունաբերա-արտադրական անձնակազմի ընդհանուր կազմում, կառավարման ծախսերի տեսակարար կշիռը արտադրանքի ինքնարժեքում, կառավարչական ֆունկցիաների կենտրոնացման աստիճանը, կադրերի կայունության գործակիցը: Ցուցանիշների տվյալ համակարգի օգնությամբ հնարավոր է բարձրացնել ո՛չ միայն պոլիգրաֆիական ձեռնարկությունների արտադրության պլանավորման ու վերլուծության մեթոդոլոգիական մակարդակը, այլև ավելի օբյեկտիվ ու լրիվ գնահատել դրանց հաջողությունները:

ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ու արդյունավետության բարձրացման գործում կարևոր նշանակություն ունեն արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը: Մեր հանրապետության տպարաններից ոչ մեկը մասնագիտացված չէ որոշակի արտադրատեսակ թողարկելու առումով: Այսպես՝ այն, ինչ թողարկում է պոլիգրաֆկոմբինատը, թողարկում են նաև № 1 և № 6 տպարանները: Միակ տարբերությունն այն է, որ պոլիգրաֆկոմբինատը նույն արտադրանքը կարող է թողարկել նաև օֆսետ եղանակով: Մեր կարծիքով, ավելի ճիշտ և արդյունավետ կլինի, եթե հանրապետության խոշոր ու միջին տպարանները մասնագիտացվեն որոշակի արտադրատեսակներ թողարկելու նպատակով:

Հայտնի է, որ պոլիգրաֆարդյունաբերության մեջ ամենաբարդն ու աշխատատարը շարվածքային պրոցեսներն են: Տպագրական և կազմարարական ժամանակակից մեքենաների արտադրողականությունն զգալիորեն բարձրացել է շարվածքայինների համեմատությամբ: Այստեղ պետք է նշել, որ միայն տեքստաշարվածքն է մեքենայացված, իսկ մաթեմատիկական, քիմիական և այլ բանաձևերի, աղյուսակների ու վիճակագրական ձևերի շարվածքը գերենս կատարվում է ձեռքով:

Եթե ռոտացիոն ու հարթ տպագրական մեկ մեքենայի միջին հզորությունն ընդունենք ժամում 10.000 թերթ-տպագրություն (իսկ այդ մեքենաների թիվը կոմբինատում, ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության և № 1 տպարաններում անցնում է չորս տասնյակից) և նկատի ունենանք, որ մեր հանրապետությունում հրատարակվող գրքերի միջին տպաքանակը 10—15 հազար է, ապա պարզ կդառնա, թե որքան գրաշարներ, տառային տնտեսություն ու շարվածքային տեխնիկա կպահանջվեն տպագրական նման մեքենաները գործով ապահովելու համար: Եվ պատահական չէ, որ բոլոր տպարաններում շարվածքային արտադրամասերի բանվորների ու մեքենաների թիվը, մյուս արտադրամասերի համեմատությամբ, միշտ բարձր է: Հետևանքը լինում է այն, որ շարվածքային արտադրամասերը չեն հասցնում գործով ապահովել տպագրական արտադրամասերը, և զգալիորեն մեծանում են վերջիններիս մեքենաների պարապուրդները: Չպետք է մոռանալ, որ տպարանների կարողությունները չափվում են տպագրական մեքենաների հզորությամբ՝ երկհերթ պլանավորման պայմաններում: Մինչդեռ, ինչպես ասացինք, տպագրական ողջ պարկը լրիվին չի ապահովված մեկհերթ աշխատանքով: Միաժամանակ հրատարակչություններում ավելի են կուտակվում ու հնանում տպագրության հանձնված ձեռագրերը: Այս պայմաններում մեր հանրապետությունում ևս հույժ կարևոր է արտադրության կոոպերացումը: Այդ նպատակով անհրաժեշտ է ստեղծել բարձր տպագրության համար ֆորմաներ պատրաստող, այսինքն՝ շարվածքային և ցինկոգրաֆիական արտադրություն, որը տպարաններին կմատակարարի պատրաստի մատրիցաներ, և այս դեպքում լրիվին կօգտագործվեն տպագրական կարողու-

թյունները։ Նման կոոպերացումը բնավ չի բացառում շարվածքային արտադրամասերի գոյությունը տպարաններում։ Դրանք պահպանվում են, բայց ոչ այժմյան մասշտաբներով, այլ անձնակազմի ու արտադրամիջոցների նվազեցված չափերով։

Այս առաջարկների կիրառմամբ կբարձրանան տպարանների աշխատանքի արդյունավետությունը, արտադրողականությունը և ֆոնդահատույցը, կաճեն նաև շահույթն ու շահութաբերությունը։

ՄԻ ՔԱՆԻ ԽՈՍՔ ՄԵՐ ՏՊԱԳՐԱԿԱՆ տառերի, տառատեսակների մասին։ Հայտնի է, որ անցյալից մեր ժառանգած տպագրատառերի տնտեսությունը եղել է աղքատիկ։ Եթե վերնագրերի համար օգտագործվել են «Վիեննական», «Գրոտեսկ», «Արամյան» և «Սովորական» կոչվող գլխատառերը՝ իրենց մի քանի տարբերակներով, ապա տեքստային շարվածքի վիճակը, այս իմաստով, եղել է ավելի անմխիթարական։ Վերջին տասնամյակներում գրահրատարակչական գործի աննախընթաց վերելքը հրամայական է դարձնում մեր տառային տնտեսության վիճակի բարելավումն ու հարստացումը։

Պոլիգրաֆվարչությունը հաճախ է հայտարարել նոր տառատեսակների մրցանակաբաշխություն։ Վաղուց ստեղծված է տառերի լաբորատորիա, որի խնդիրն է վերականգնել մաշվածության հետևանքով գործածությունից դուրս եկած տառատեսակները, ստեղծել նորերը։ Ընթերցողը, բնականաբար, իրավունք ունի պահանջելու, որ ամեն մի տեքստ շարվի ու ձևավորվի իր բնույթին համապատասխան տառատեսակով։ Տեխնիկական ու գեղարվեստական խմբագիրները, թողարկիչներն ու հրատարակիչներն ընթերցողների այս օրինական ցանկությունն իրականացնելու ճանապարհին նկատում են, որ նոր տառատեսակները, եղածների հետ, դեռևս չեն կարող բավարարել «սպառողների» ամենահամեստ պահանջները։ Տառատեսակների պակասը, նույնիսկ նորերի առկայության պայմաններում, այսօր շատ ավելի զգալի է, քանի որ, նախ՝ այսօրվա պահանջներն ավելի մեծ են, ապա՝ գործածվելու իրավունք ստացած շատ նոր տառատեսակներ կարճ ժամանակամիջոցում դառնում են անօգտագործելի։ Մեր հաստատ համոզմամբ, եթե տառաստեղծման գործում առանձին անհատների մենաշնորհի փոխարեն տիրի մասնագետների ստեղծագործական աշխատանքը, նորաստեղծ տառատեսակները կլինեն բազմազան և ինքնատիպ։ Անհրաժեշտ է, որ Հրատպետկոմը ևս պատշաճ ուշադրություն հատկացնի նոր տառատեսակների ստեղծմանն ու կիրառմանը։

Պոլիգրաֆիայում հետզհետե առավել լայնորեն է կիրառվում ֆոտոշարվածքը, որը հնարավորություն է ընձեռում լրիվ ավտոմատացնելու շարվածքային բոլոր պրոցեսները։ Արդեն ստեղծվել է հայրենական ֆոտոշարվածքային մեքենաների ընտանիք, որի համար բազմապիսի հայերեն տառատեսակների պատվիրումը պետք է սկսել այսօրվանից, հապաղումը կհանգեցնի լուրջ դժվարությունների։

Եթե ֆոտոշարվածքի և խոշոր կեգլային շարվածքի համար տառամայրեր պատրաստելու հարցը կապված է մոսկովյան ու լենինգրադյան գործարանների հետ, ապա ձեռքի շարվածքի համար տառատեսակների ձուլումն իրագործելի է տեղական պայմաններում, միայն պետք է լրջորեն զբաղվել մեր տառերի լաբորատորիայի և տառաձուլարանի վերակառուցմամբ։ Ձուլարանը գտնվում է տնայնագործական արհեստանոցի պայմաններում, որտեղ աշխատում է ընդամենը մեկ բանվոր, ու նա էլ ապահովված չէ գործով։ Չկան այսօրվա կարիքները բավարարող մեքենաներ։ Դրանց մի մասը ո՛չ միայն հին է, այլև մաշված, իր դարն ապրած։ Տառաձուլարանը չունի կոնկրետ պլանային առաջադրանք, որտեղից և բխում է անտարբերությունն արտադրության ծավալի մեծացման, նորագույն սարքավորումների տեղադրման նկատմամբ։

Ժամանակն է, որ Հայաստանի պոլիգրաֆիան ունենա ավելի հզոր ու արդիական տեխնիկայով հագեցած, որակյալ ու բանիմաց մասնագետներով ապահովված ձուլարան։ Այս հարցում լուրջ անելիքներ ունի նաև Հրատպետկոմի մատակարարման վարչությունը, որն առաջին հերթին պետք է տպարան-



ներն ապահովի եղած տեսակաշարերի տառատեսակներով։ Մեր կարծիքով ճիշտ կլինի, որ նոր տառատեսակների մշակման խնդրով տառերի լաբորատորիայի փոխարեն զբաղվի ավելի իրավասու մի հիմնարկություն։

ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՑՈՒՅՑ ԵՆ ՏԱԼԻՍ, որ մեր հանրապետությունում վատ չէ ժամանակակից մեքենաների, սարքավորումների մատակարարումը։ Սակայն մի բան է ունենալ ժամանակակից մեքենաներ, այլ բան՝ օգտագործել դրանք ողջ կարողությամբ ու հզորությամբ։ Իսկ այդ հնարավոր է իրականացնել միայն բանվորական և միջին մասնագիտական որակյալ կադրերի միջոցով։

Ինչպես նշեցինք, պոլիգրաֆիական տեխնիկան և տեխնոլոգիան էական առաջընթաց են ապրել. աշխատող ներկա բանվորական սերնդի աչքի առաջ դրանք մի քանի անգամ սերնդափոխվել են։ Ահա ինչու նախկին որակյալ մասնագետներն անգամ այսօր դժվարանում են տիրապետել նորագույն տեխնիկային ու տեխնոլոգիային։ Իսկ արտադրություն եկած երիտասարդության մեծ մասը, գործնականում դրանց չտիրապետելու հետևանքով, թողնում է արտադրությունը։

Հանրապետության պոլիգրաֆիան խիստ կարիք է զգում բանվորական ձեռքերի և ինժեներա-տեխնիկական մտքի։ Որակյալ բանվորական կադրերի պատրաստման համար անհրաժեշտ է պրոֆտեխնիկական ուսումնարան՝ իր ուսումնա-արտադրական բազայով, որը պոլիգրաֆարդյունաբերությունը կապահովի տեսական ու գործնական գիտելիքներ ունեցող երիտասարդ մասնագետներով։

1966 թ. պրոֆտեխկրթության պետական կոմիտեի № 32 ուսումնարանում, որտեղ հիմնականում պատրաստում են փականագործ-մոնտաժողներ, կահույքագործներ, էլեկտրա-գազաեռակցողներ և այլն, ստեղծվեցին նաև գրաշարների ու տպագրիչների պատրաստման խմբեր։ Իր գոյության տասը տարիների ընթացքում հիշյալ ուսումնարանը տվել է մոտ 250 շրջանավարտ, որոնցից այսօր տպարաններում շատ քչերն են մնացել։ Ի՞նչն է պատճառը։ Ուսումնարանը պոլիգրաֆիստներ պատրաստելու համար չունի համապատասխան ուսումնա-արտադրական բազա և տեսական ու պրակտիկ գիտելիքներ ունեցող որակյալ մասնագետ-ուսուցողներ։ Միության պոլիգրաֆուսումնարաններում ուսուցումը եռամյա է, միայն միջնակարգ կրթության բազայի վրա։ Մինչդեռ հիշյալ ուսումնարանում երկամյա է՝ 8—10-ամյակի բազայի վրա։ Այսպիսի պայմաններում ավելորդ է խոսել որակյալ բանվորական կադրերի պատրաստման մասին։

Հանրապետության պոլիգրաֆարդյունաբերության մեջ որակյալ բանվորական կադրերի պակասն զգացվում է դեռևս շատ վաղուց, սակայն, ինչպես տեսնում ենք, մինչև այժմ ոչ մի գործնական քայլ չի արված այդ ասպարեզում։

Որակյալ բանվորների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների պակասն ակներևաբար անդրադառնում է մեր հանրապետության պոլիգրաֆարդյունաբերության քանակական ու որակական ցուցանիշների վրա։ Գաղտնիք չէ, որ նույնանման մեքենաներով, նյութերով ու տեխնոլոգիայով Միության այլ հանրապետություններում ու քաղաքներում ապահովվում են շատ ավելի բարձր որակ և պոլիգրաֆիական կատարում։

Պոլիգրաֆմասնագետների պակասն այսօր խիստ զգալի է, իսկ վաղը շատ ավելի զգալի կլինի, ուստի և համապատասխան մարմիններն ու կուսակցական կազմակերպությունները այսօրվանից իսկ պետք է համակողմանի հոգան այդ մասին, ամեն ինչ անեն այդ կարևոր խնդրի լուծման համար։ Մեր մայրաքաղաքում կառուցվում են պոլիգրաֆիական երկու հսկաներ՝ ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության կոմբինատ-համալիրը և Հրատպետկոմիտեի գունավոր տպագրության ֆաբրիկան։ Այստեղ պետք է նշել, որ երկու տեղերում էլ գերակշռողը լինելու է օֆսեթ տպագրությունը։ Կիրառվելու են բոլորովին նոր տեխնիկա ու տեխնոլոգիա, պահանջվելու են նոր մասնագիտություններ։ Վաղվա դժվարու-

թյուններն ավելի պարզ պատկերացնելու համար պետք է հաշվի առնել այն հանգամանքը, որ եթե այսօրվա տպարաններում բանվորական և ինժեներատեխնիկական աշխատողների խիստ կարիք է զգացվում, ապա ինչ կլինի երկու—երեք տարի հետո, երբ այդ կառույցները շահագործման հանձնելու համար կպահանջվեն հազարից ավելի որակյալ աշխատողներ, այն էլ բոլորովին նոր մասնագիտություններով:

Կարծում ենք՝ այս գործում հապաղելն անթույլատրելի է: Անհրաժեշտ է դիմել գործնական միջոցների, պոլիգրաֆիստների պատրաստման հարցը կարճ ժամկետում լուծելու համար:

ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ հիմնական ու կարևորագույն պայմաններից են նաև արտադրասարքավորումների տեխնիկական սպասարկումը, պլանային նախազգուշական վերանորոգումները: Այս կարևոր գործը ևս, ցավոք, անբավարար հիմքերի վրա է: Եթե շոշափելի քայլեր են արված մեքենաների ձեռքբերման մարզում, ապա դրանց պահպանման և պահեստամասերով ապահովելու գործն զգալիորեն ետ է մնում: Հաճախ է պատահում, որ տպարանում այս կամ այն պահեստամասի բացակայության պատճառով մեքենաներն օրերով, անգամ ամիսներով չեն բանում: Պահեստամասերի անբավարար մատակարարումը պետք է բացատրել ոչ թե մատակարարող կազմակերպությունների, այլ տպարանների և վերանորոգող կազմակերպությունների մեղքով, ուր չկան որակյալ մասնագետներ, որոնք կարողանային, մեքենայական պարկի վերանորոգումների գրաֆիկին համապատասխան, ճիշտ հաշվարկել պահանջվող պահեստամասերի քանակն ու տեսակները՝ համաձայն արտադրող գործարանների և սպառող կազմակերպությունների անվանացուցակի:

Պահեստամասերի մատակարարման ու պլանային-նախազգուշական վերանորոգումների վատ կազմակերպման հետևանքով շատ մեքենաներ, թե՛ արտասահմանյան և թե՛ հայրենական, ժամանակից շուտ անգործածելի են դառնում՝ չապրելով անգամ հիմնական վերանորոգման մեկ ցիկլ:

Այժմյան տեխնիկայի առկայության պայմաններում շատ դժվար է տպարաններում պլանային նախազգուշական (փոքր, միջին և հիմնական) վերանորոգումների կազմակերպումը:

Այդ նպատակով, տարիներ առաջ, Երևանում կազմակերպվեց պոլիգրաֆիական մեքենաների վերանորոգման մեխանիկական արհեստանոց, որը կենտրոնացված կարգով պետք է ապահովեր հանրապետության բոլոր տպարանների մեքենա-սարքավորումների պլանային-նախազգուշական վերանորոգումները և, միաժամանակ, պատրաստեր ոչ-ստանդարտ սարքավորումներ ու հարմարանքներ: Ցավոք, պահեստամասերի մատակարարման ու մեքենաների վերանորոգման գործը մինչև օրս անմխիթար վիճակում է, և արհեստանոցն այժմ ի վիճակի չէ լիարժեք կատարելու որևէ միջին բարդության մեքենայի փոքր վերանորոգում անգամ:

Կուսակցության XXV համագումարում շեշտվել է հատկապես գիտատեխնիկական առաջընթացի արագացման խնդիրը: Անցած հնգամյակում պոլիգրաֆարդյունաբերության ոլորտում հաջողությամբ ներդրվել են տեխնոլոգիական նոր պրոցեսներ ու սարքավորումներ:

Ելնելով կուսակցության XXV համագումարի առաջադրանքներից՝ այժմ կազմվում է սովետական մամուլի արտադրական բազայի հետագա զարգացման ծրագիր, որը նախատեսելու է պոլիգրաֆարդյունաբերության կոմպլեքս զարգացումը տասներորդ հնգամյակում: Այս ծրագրի հաջող իրականացման համար անհրաժեշտ է բոլոր օղակներում առավել բարձրացնել տնտեսական գործունեության ղեկավարման մակարդակը, խնդիր, որը հնարավոր է լուծել ներքին ռեզերվների մոբիլիզացման, պոլիգրաֆձեռնարկությունների բոլոր աշխատողների նախաձեռնության զարգացման միջոցով:

# ԱՎՏՈՄԱՏԻԿԱՆ ԵՎ ՆՐԱ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

**Ա.Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

ՀՆՈՒՑ Ի ՎԵՐ ՄԱՐԴՆ իր աշխատանքով ստեղծել է նյութական բարիքներ և այդ պրոցեսում կատարելագործել է բանելու գործիքները, ավելացրել արտադրամիջոցների տեսակները: Այդ ամենի հետ մեկտեղ, հմտացել է ինքը՝ մարդը: Աշխատագործիքների կատարելագործման և մարդկանց հմտության բարձրացման շնորհիվ աստիճանաբար ընդլայնվում է նյութական արտադրության ոլորտը:

Հարկ է նշել, սակայն, որ սոցիալական հեղափոխությունների ժամանակ հասարակական կյանքում տեղի ունեցող հեղաբեկումներն ավելի ակնբախ են երևան գալիս, քան գիտատեխնիկականի: Այսպես, գիտության մեջ առաջին հեղափոխությունը տեղի ունեցավ XV դարում, բայց այդ գիտական նվաճումները նյութականացվեցին միայն XIX դարի տեխնիկական հեղաբեկման ժամանակ, երբ հանդես եկավ աշխատամեքենան: Եվ պատահական չէ, որ Մարքսը նշում է. «Աշխատամեքենայից է սկսվում XVIII դարի արդյունաբերական հեղափոխությունը»: Ուշագրավ է, որ դրան հաջորդած 40—50 տարիներում արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 130, իսկ մինչև մեր դարի 50-ական թվականները՝ 14 հազար անգամ (տե՛ս К. И. Клименко, Экономические проблемы технического прогресса в машиностроении СССР, изд. «Наука», 1965):

Արդյունաբերական հեղափոխության շնորհիվ ստեղծված արտադրաուժերի մեծ մասշտաբների մասին են նշել Մարքսն ու Էնգելսը Կոմունիստական կուսակցության մանիֆեստում. բուրժուական դասակարգը, գրել են նրանք, իր տիրապետության 100 տարիներից պակաս ժամանակաշրջանում ավելի շատ արտադրաուժեր է ստեղծել, քան նախորդ սերունդները՝ միասին վերցրած:

Սակայն կապիտալիստական արտադրահարաբերությունների հաստատմամբ ավելի խորացավ արտադրաուժերի ոչ ներդաշնակ զարգացումը: Անգլիացի տնտեսագետ Ս. Լիլլին նշում է. «Չի կարելի անտեսել այն փաստը, որ կապիտալիզմը, չնայած լավ է գործել իր ժամանակին, սակայն հարմար տնտեսական կառուցվածք չէ այսօրվա տեխնիկայի, առավել ևս, վաղվա առաջավոր տեխնիկայի շահավետ օգտագործման համար» (С. Лилли, Автоматизация и социальный прогресс, М., 1958, стр. 295):

Գիտատեխնիկական հեղափոխության ներքին էությունը հեղափոխությունն է արտադրաուժերում, ամենից առաջ՝ աշխատագործիքներում: Դրա արգասիքն են արտադրության տեխնիկական բազիսը բնորոշող նորորակ մեքենաները, դրանց ավտոմատ նոր սիստեմները: Ժամանակակից արտադրության մեջ ավտոմատիկան աշխատանքի արտադրողականության բարձրացման ամենավճռական պայմանն է: Արդի պայմաններում զարգացող ամեն մի ինքնուրույն գիտական ուղղության մեջ տեխնիկական առաջադիմության իրականացումն անհնար է առանց ավտոմատիկայի: Մարդկության պատմության տարբեր ժամանակաշրջաններում միշտ էլ առկա են եղել ավտոմատիկայի կիրառման տարրեր և, ներկայի բարձունքից զննելով տեխնիկայի զարգացման պատմությունը, տեսնում ենք, որ պատմական տարբեր ժամանակաշրջաններում մարդն իր աշխատանքի թե՛ մտավոր և թե՛ ֆիզիկական ֆունկցիաները վերածել է տեխնիկական միջոցների:

Մարդու ստեղծած առաջին պարզունակ սարքը թակարդն էր. դրան հաջորդեցին ժամացույցն ու ջրաղացը: Եթե ջրաղացի ու ժամացույցի գյուտը կամուրջ հանդիսացավ մանուֆակտուրային արտադրությունից ինդուստրիալին անցնելու համար, ապա աշխատամեքենայով դրվեց ֆաբրիկա-գործարանային մեքենայական արտադրության հիմքը: Իսկ այսօր մաթեմատիկական

էլեկտրոնային հաշվողական մեքենաների հիման վրա ստեղծված հարմարանքներն ու սարքերը սկզբնավորեցին աշխատանքի կազմակերպման նորագույն համակարգը՝ առանց արտադրության պրոցեսին մարդու անմիջական մասնակցության: Արդի տեխնիկական առաջընթացի հիմքը ժամանակակից ավտոմատ սարքերն ու հարմարանքներն են, որոնք էապես փոխում են մարդու աշխատանքի բնույթը:

Սովետական գիտության ու տեխնիկայի խոշորագույն նվաճումներից էր առաջին գործարան-ավտոմատի ստեղծումը, որտեղ արտադրվում են ավտոմոբիլների շարժիչների մխոցներ: Դա այն ժամանակվա միակ ավտոմատացված գործարանն էր աշխարհում: Այդ գործարանի արտադրության ամբողջ պրոցեսներն սպասարկում էր ընդամենը 9 բանվոր: Իհարկե, համանման գործարան ստեղծվեց նաև արտասահմանում: Սակայն որոշ ժամանակ անց սկսեցին դրսևորվել մեխանիկական հիմքի վրա ստեղծված ավտոմատ արտադրության թույլ կողմերը: Բանն այն է, որ դրանք գործարկվեցին «մինչկիբեռնետիկական» ժամանակաշրջանում և, բնական է, որ դա իր կնիքն էր դնում արտադրության վրա: Չնայած այդ ավտոմատ գործարաններն իր ժամանակի տեխնիկական առաջադիմության մեծագույն նվաճումներից էին, սակայն, որքան էլ պարադոքսային է, դրանք այսօր կարող էին արգելակել ավտոմատացման հետագա առաջընթացը: Արդի գիտատեխնիկական առաջադիմության գլխավոր բնորոշ գիծն այն է, որ մշտապես բարելավվում են տեխնոլոգիական պրոցեսները, կատարելանում, ավելի որակյալ է դառնում արտադրանքը: Մեխանիկական հիմքի վրա գործող ավտոմատ համակարգի դեպքում, եթե փորձենք իրի կոնստրուկցիան որոշ չափով բարելավել, կհանդիպենք լուրջ դժվարությունների: Հենց այստեղից էլ երևում է, որ այդ հիմքի վրա կառուցված ավտոմատ սիստեմներն իրենց գործունեության հնարավորություններով սահմանափակ են: Իհարկե, առայժմ այդ սիստեմի ձեռնարկություններից հրաժարվել չի կարելի, որովհետև միանգամից կիբեռնետիկական հիմքի վրա նման ձեռնարկությունների մասսայական ստեղծումը հնարավոր չէ: Կարևորն այն է, որ ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում ավտոմատիկան արդեն պետք է իրականացվի ոչ թե մեխանիկական, այլ էլեկտրոնային հաշվողական մեքենաների բազայի վրա: Էլեկտրոնային հաշվողական մեքենաների բազայի վրա կառուցված ավտոմատ գործարաններն աշխատում են հստակ ու «ստեղծագործաբար», որը բացառվում է մեխանիկական ավտոմատացման ժամանակ:

Եթե ավտոմատիկան տեխնիկական առաջընթացի հիմքն է, իսկ վերջինիս էական չափանիշը՝ աշխատանքի արտադրողականությունը, ապա սոցիալիստական հասարակարգի վերջնական հաղթանակը մեծապես պայմանավորված է ավտոմատիկայի լայն կիրառմամբ:

Ավտոմատացման մակարդակը, հատկապես ժամանակակից հաշվողական տեխնիկայի հիման վրա, դարձել է երկու տարբեր սոցիալական սիստեմների մրցության ամենավճռական ոլորտներից մեկը: Վերջին ավելի քան երկու տասնամյակում, ինչպես սոցիալիստական, նույնպես և զարգացած կապիտալիստական երկրներում, բազմապատկվել են ավտոմատ սարքերի և հարմարանքների պահանջն ու արտադրությունը:

Ավտոմատացումը մեր օրերում հույժ կարևոր է նաև ժողտնտեսության կառավարման ոլորտում: Դրա հրատապության վկայությունն են ակադեմիկոս Վ. Գլուշկովի հաշվարկները, որոնց համաձայն 30-ական թվականներին մեր երկրում ժողտնտեսության կառավարման հարցերի լուծման համար հարկ էր կատարել $10^{14}$ մաթեմատիկական գործողություն, իսկ այսօր՝ $10^{16}$:

Ավտոմատիկայի կիրառման հիմքը էլեկտրոնային հաշվողական մեքենաներն են: Հետզհետե ավելի են ընդլայնվում ԷՀՄ-երի կիրառման շրջանակները: Ներկայումս դրանք գործադրվում են կյանքի համարյա բոլոր կարևորագույն ասպարեզներում: Այդ մեքենաներն այժմ կարելի է օգտագործել մարդկային մտավոր ֆունկցիաների ոլորտում, սկսած ամենատարբեր կանխագուշակումներից մինչև քաղցկեղի բջջի դասակարգումը և դրական տեքստի վերլուծությունը:

Էլեկտրոնային հաշվողական մեքենաների կիրառման շրջանակներն ավելի կընդլայնվեն, երբ առավել խորությամբ ըմբռնենք բնության երևույթները: Աշխարհահռչակ գիտնական Ն. Վինները իրավամբ մեր ժամանակները համարել է «կապի և կառավարման դար»: Այսօր լազերային համակարգի մի հզոր ավտոմատ հեռախոսակայան կարող է ներառնել աշխարհի ողջ հեռախոսացանցը: Իհարկե, կյանքի բոլոր բնագավառներում ավտոմատիկայի հնարավոր կիրառումը ոչ մի տարակուսանք չի հարուցում, բայց հարկ է պարզել, թե ավտոմատ սարքերի ու հարմարանքների ստեղծումն ու դրանց կիրառումը մարդու աշխատանքային ֆունկցիաների մեջ ինչպիսի՛ դեր են խաղում, ի՛նչ տեղաշարժեր են առաջացնում և, վերջապես, ինչպիսի՛ փոխադդեցություն են ունենում:

XVIII դարի վերջին և XIX դարի սկզբին, արդյունաբերական հեղաշրջման ժամանակ, մարդու ձեռքի կամ ֆիզիկական աշխատանքը փոխարինվեց մեքենայականով: Իսկ մեր օրերում, ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության շրջանում, ավտոմատացվել են մարդու մտավոր աշխատանքի շատ ֆունկցիաներ: Ուստի և կարող ենք եզրակացնել, որ ավտոմատիկան մարդու վերացական մտածողության նյութականացումն է: Մարդու աշխատանքի արդյունքում առհասարակ ատարկայանում են նրա ֆիզիկական ու մտավոր աշխատանքի տարրերը: Սակայն պատմական տարբեր ժամանակներում առարկայացված աշխատանքի արդյունքի մեջ տարբեր է լինում մտավոր ու ֆիզիկական աշխատանքի տեսակարար կշիռը: Աշխատագործիքների կատարելագործմամբ, աշխատողի որակավորման բարձրացմամբ մտավոր աշխատանքի տեսակարար կշիռն արագ աճում է, ֆիզիկական աշխատանքինը՝ նվազում: Ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում հաշվողական մեքենաների ավտոմատ համակարգերը հեղաշրջում կատարեցին արտադրության մեջ այնպես, ինչպես հաստոցները XIX դարի սկզբին՝ արդյունաբերական հեղափոխության ժամանակ:

Մաթեմատիկական հաշվողական մեքենաների արագ սերնդափոփոխմանը զուգընթաց աներևակայելի արագությամբ մեծանում է դրանց հիշողության ծավալը: Հետաքրքրական է նշել, որ մարդու ներվաթելերով ձայնը վայրկյանում կարող է անցնել տասնյակ հարյուրավոր մետր, իսկ էլեկտրոնային հաշվիչ մեքենաներում ձայնի արագությունը հասնում է 300 հազ. կմ/վայրկյանի: Այս արդեն վիթխարի նվաճում է ժամանակի արդյունավետ տնօրինման առումով: Գիտնականներն ու կոնստրուկտորները ջանում են, որ 4-րդ սերնդի էլեկտրոնային հաշվիչ մեքենաները լինեն փոքրածավալ, թեթև. այդ առանձնապես կարևոր է թռչող մեքենաների համար: Այժմ ստեղծվում են միկրոմինիատյուր էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ: Գիտնականներին ներկայումս առավել մտահոգում է ստեղծված մեքենաների հուսալիության ու երկարակեցության բարձրացման խնդիրը: Այժմ թողարկվում են այնպիսի միկրոմինիատյուր էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, որոնց աշխատանքի միջին ժամկետը (առանց ընդհատման) մինչև 90 հազար ժամ է (համարյա 10 տարի): Առավել հռչակված ԷՀՄ-երի թվին են պատկանում սովետական «ԲԷՍՄ—6», «Մինսկ—32», ամերիկյան «Ստետչ», անգլիական «Ատլաս» և այլ մեքենաներ: Սոցիալիստական երկրների համագործակցության շնորհիվ ինտեգրալ սխեմաների բազայի վրա վերջերս ստեղծվել է «Ռյադ» մակնիշի կատարելագործված ԷՀՄ, որը վայրկյանում կատարում է մեկ միլիոն գործողություն:

Արդի գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում ժողովրդական տնտեսության կառավարման հարցերի արդյունավետ լուծումն իրականացվում է այդ գործում ամենալայն մասշտաբներով ավտոմատ համակարգերի ներդրման միջոցով: Ըստ ակադեմիկոս Ն. Վ. Գլուշկովի, մեր երկրում ավտոմատ համակարգերով ողջ տնտեսության կառավարումը հնարավոր է իրականացնել 10—12 տարում: Պետական այդ կարևորագույն հարցը նախատեսվում է լուծել երկու փուլով: Առաջին փուլի վերջում պետք է իրականացնել համապետական ավտոմատ համակարգի առաջին հերթի խնդիրները, ստեղծել ՍՍՀՄ պետպլանին կից գլխավոր հաշվողական կենտրոն, ինչպես նաև հաշվողական կենտրոններ միութենական հանրապետությունների պետպլաններին կից՝ մի քանի ճյուղերի համար: Երկրորդ փուլում կստեղծվի համապետական ավտոմատ համակարգ, որը կավտոմատացնի ժողովրդական տնտեսության ղեկավարման ողջ սիստեմը: Տնտեսության մեջ ավտոմատ կառավարման համակարգի (ԱԿՀ) օգտագործման արդյունավետությունը մեծ չափով պայմանավորված է տվյալ երկրի սոցիալական կառուցվածքով: Կապիտալիզմի պայմաններում արտադրության ոլորտում ԱԿՀ-ի կիրառումն ստիպում է ծանրության կենտրոնը փոխադրել առանձին ֆիրմաներ ու խոշոր մոնոպոլիստական ընկերություններ: Զարգացած կապիտալիստական երկրների խոշոր մոնոպոլիստական ընկերություններում բավական բարձր է ավտոմատ կառավարման համակարգերի օգտագործման մակարդակը, սակայն տնտեսության մասնավոր սիստեմը հնարավորություն չի ընձեռում կիրառելու համապետական ավտոմատ կառավարման խոշոր սիստեմներ: Մինչդեռ սոցիալիզմի պայմաններում պլանային տնտեսությունը, տնտեսության կենտրոնացված կառավարումը օբյեկտիվ պայմաններ են ապահովում համապետական միասնական հաշվողական կենտրոնի ստեղծման համար:

Համապետական ավտոմատ համակարգը, որն իրենից կներկայացնի մի խոշորագույն հաշվողական կենտրոն, կկառավարի երկրի ողջ ժողովրդական տնտեսությունը՝ ընդգրկելով դրա բոլոր հաշվողական կենտրոնները: Այդ համակարգի համար կպահանջվի «Մինսկ—32» տիպի մի քանի հազար էլեկտրոնային հաշվիչ մեքենա:

Իր հասարակական պրակտիկայի պահանջներից ելնելով՝ մարդը կամենում է լուծել բյուրավոր հարցեր: Այդ առումով նրա մտածողության սահմաններն անսպառ են, իսկ դրա իրականացման ու նյութականացման՝ նրա ֆիզիկական հնարավորությունները՝ սահմանափակ: Ահա այստեղ է, որ մարդուն օգնության է հասնում մեքենան, այն կատարում է «ստեղծագործական» կամ «մտածողական» այնպիսի ֆունկցիաներ, որպիսիք մարդը ֆիզիկապես հնարավորություն

չունի իրականացնելու։ Այստեղ մարդու վերացական մտածողության ու մեքենայի կողմից մարդու մտածողական ֆունկցիաների արդյունքների նյութականացման պրոցեսները մերձենում են։ Բայց մարդու մտածողության սահմաններն անտեսանելի են, իսկ մեքենայի մեխանիկական մտածողության սահմանները գտնվում են մարդու տեսադաշտում։ Ավտոմատիկայի զարգացման մեր դարում մեքենայի միջոցով մարդն սկսել է ավելի արագ նյութականացնել իր մտահղացումները։

Այսօրվա տեխնիկական առաջընթացի և, մասնավորապես, ավտոմատիկայի ամենագլխավոր ու ամենահիմնական պրոբլեմներից մեկն էլ արդյունաբերության բոլոր ճյուղերում արտադրության պրոցեսների անընդհատության ապահովումն է։ Այդ առթիվ Մարքսը նշել է, որ առավել ժամանակակից և տնտեսապես արդյունավետ է այն մեքենան, որն ունակ է արտադրել անընդհատ։ Այնուհետև՝ արտադրանքը կթողարկվի ավելի լավ, ավելի փոքր կորուստներով, եթե արտադրապրոցեսներն իրականանան առանց մարդու անմիջական մասնակցության (տե՛ս К. Маркс, Машины. Применение природных сил и науки (из рукописи 1862—1863 гг. к критике политической экономии. Вопросы истории естествознания и техники. М., 1968, вып. 25, стр. 46).

Միաժամանակ պետք է նշել, որ արտադրության անընդհատությունը չեն հաջորդում միայն դրա տնտեսական շահավետությունն ու արտադրանքի բարձրորակությունը։ Այստեղ կարևորն այն է, որ մարդն ընդհանրապես ազատ լինի արտադրապրոցեսից, դառնա արտադրության վերահսկողն ու կարգավորողը։

Հակամարտ դասակարգերի բացակայության պայմաններում ավտոմատացումը մարդուն ազատում է ֆիզիկական ծանր աշխատանքից, հանդիսանալով այն հիմնական պայմաններից մեկը, որն աշխատանքը դարձնում է կյանքի առաջին կենսական պահանջ, քանի որ այն թեթևացնում է աշխատանքն ընդհանրապես, կրճատում աշխատօրվա տևողությունը, ավելացնում ազատ ժամանակը, որի արդյունավետ ու խելացի օգտագործումը մեծապես նպաստում է մարդու համակողմանի զարգացմանը։ Ավտոմատ միջոցների ներդրմամբ հույժ մեծանում է վերահսկողների դերը, որոնց աշխատանքի հիմնական բովանդակությունն ինտելեկտուալ ֆունկցիան է։ Նյութական արտադրության ավտոմատացմամբ առաջանում է բարձր որակավորում ունեցող աշխատողների մեծ պահանջ։

Միաժամանակ պետք է նշել, որ ավտոմատիկան, աշխատանքը թեթևացնելու, արտադրությունն անընդհատ դարձնելու հետ մեկտեղ, հաճախ աշխատանքը դարձնում է միօրինակ ու ձանձրալի։ Երբեմն ավտոմատ սարքերին անընդհատ հետևելու ընթացքում մարդու աշխատանքում պակասում է ստեղծագործական մոմենտը։ Ժամանակակից բարձր ավտոմատացված համակարգերի գործադրման պայմաններում խիստ ավելանում է մարդու նյարդային բեռնվածությունը։ Փոփոխվող պայմանների վերլուծությունը, արտադրության պրոցեսի վերահսկողությունը պահանջում են մեծ լարվածություն, հաճախ առաջացնելով նյարդային գերհոգնածություն ու հիվանդություններ։ Հետևաբար, այսօրվա կարևոր խնդիրներից մեկն էլ այնպիսի պայմանների ստեղծումն է, որոնք մարդու աշխատանքային ֆունկցիաներին հաղորդեն ստեղծագործական բնույթ, որպեսզի մարդը հաճույք ստանա իր կատարած աշխատանքից։

Սոցիալիզմի ժամանակ ոչ թե մարդը պետք է հարմարվի մեքենաների ավտոմատ համակարգին, այլ մեքենան պետք է հարմարեցնել մարդու արտադրական հոգեբանությանը։ Ուստի, անհրաժեշտ է արտադրությունը «հոգեբանացնել» կամ «հումանիզացնել»։ Այդ նպատակով նորագույն ավտոմատ սարքերի նախագծողներն ու իրացնողները իրենց աշխատանքում պետք է հենվեն ինժեներական հոգեբանության, տեխնիկական էսթետիկայի և էրգոնոմիկայի արդի նվաճումների վրա։

ՍՄԿԿ XXIV համագումարը առաջադրեց պատմական կարևորություն ունեցող խնդիր— գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն օրգանապես միացնել տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելություններին, ավելի լայնորեն զարգացնել արտադրության հետ գիտության միացման սեփական, սոցիալիզմին հատուկ ձևերը։

Անժխտելի է այն փաստը, որ, ինչպես կապիտալիզմի, նույնպես և սոցիալիզմի ժամանակ ավտոմատացումը մեծապես նպաստում է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, բայց դրա սոցիալական հետևանքներն արմատապես տարբեր են սոցիալական տարբեր կարգերում։

Կապիտալիստական երկրներում ավտոմատացումն իրականացնելիս նկատի են առնվում տվյալ մոնոպոլիստական ընկերության շահերն ու ձգտումները, ամենևին հաշվի չառնելով աշխատավորի սոցիալական դրությունը, շահերը։ Մեծ չափերի է հասնում գործազրկությունը։ Ճանապարհ դեպի աղքատություն— ավտոմատացման դերը կապիտալիզմի պայմաններում այսպես դիպուկ է բնութագրել ամերիկյան արհմիութենական «Նյուս» հանդեսը։

Սոցիալիզմի ժամանակ այն նյութական առատության պայման է և մեծապես նպաստում է աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացմանը։ Ժողտնտեսության ավտոմատացումը սոցիալիզմի օրոք, ի վերջո, ռեալ հնարավորություն է ընձեռում կրճատելու բանվորական աշխատաժամանակը, զգալիորեն ավելացնելու աշխատողի ազատ ժամանակի տևողությունը։

Մեր օրերում առանձին կարևորություն է ստանում ազատ ժամանակի օգտագործման հարցը։ Ազատ ժամանակը մարդուն անհրաժեշտ է կրթության, մտավոր զարգացման, սոցիալական ֆունկցիաներ կատարելու, ընկերական հաղորդակցության, ֆիզիկական ուժի վերականգնման ու մտավոր զարգացման, ազատ խաղերի համար (տե՛ս Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, Երևան, 1954, էջ 278)։ Սովետական երկրում, աշխատելով շաբաթական 41 ժամ, ունենալով երկու հանգստյան օր և ամենամյա արձակուրդ, մեր քաղաքացիները հնարավորություն ունեն ազատ ժամանակն օգտագործելու իրենց բազմակողմանի զարգացման համար, այդ ռեալ հնարավորություն է ստեղծում զբաղվելու գիտությամբ, արվեստով, սպորտով, բարձրացնելու կուլտուր-տեխնիկական և հանրակրթական մակարդակը։ Սովետական մարդիկ ազատ ժամանակն օգտագործում են հատկապես ընդհանուր հանրակրթական ու մասնագիտական գիտելիքների մակարդակը բարձրացնելու նպատակով։ Այսպիսով, ազատ ժամանակի շնորհիվ աշխատողը դառնում է առավել որակյալ։ Ինչ խոսք, աշխատանքի ու ազատ ժամանակի միջև կա դիալեկտիկական կապ, և դրանք օրգանապես լրացնում են միմյանց։ Երբ արտադրությունը լրիվին ավտոմատացված կլինի, բանվորն առավել ժամանակ ու հնարավորություն կունենա ավելի խոր ուսումնասիրելու տեխնոլոգիան, սարքավորումների նախագծման առանձնահատկությունները, կատարելագործելու իր մասնագիտական ունակությունները։ Հանրահայտ է, որ մի քանի բանվորական մասնագիտություններ աստիճանաբար բարձրացնում են բանվորի մտավոր աշխատանքի ֆունկցիան, բնականաբար իջեցնելով նրա ֆիզիկական աշխատանքի տեսակարար կշիռը։ Հաշվարկված է, որ պողպատ ձուլողն արդեն իր բանվորական աշխատաժամանակի ավելի քան կեսը տրամադրում է մտավոր աշխատանքին (ֆունկցիայի հաշվարկում, արտադրության ընթացքի վերահսկում և այլն)։ Իսկ դրա համար անհրաժեշտ է կուլտուր-տեխնիկական պատշաճ մակարդակ, հանրակրթական համապատասխան գիտելիքներ, որոնք աշխատող մարդը, բնականաբար, ձեռք է բերում հիմնականում ազատ ժամանակամիջոցում։ Հենց այդ նկատի ունենալով էր Մարքսն ընդգծում, որ բանվորի ազատ ժամանակը հասարակական մեծ հարստություն է։

Անհատի համակողմանի զարգացումը մեր օրերի էական խնդիրներից մեկն է, որի լուծումը կարևոր է ո՛չ միայն անհատի կենսապայմանների բարելավման, այլև հասարակական հարստությունն արդյունավետ ու նպատակասլաց օգտագործելու առումով։ Կոմունիստական հասարակարգի կառուցման ընթացքում այս խնդիրը մեր երկրում ստանում է նաև քաղաքական մեծ նշանակություն։ Դա անհատի համակողմանի զարգացման համար ամենաանհրաժեշտ ժամանակն է, որի տնօրինման մարզում մեր երկրում ստեղծված են նպաստավոր պայմաններ, կուտակված է զգալի փորձ։ Մարդիկ դարեր ի վեր վարժվել են աշխատել ու հարմարվել աշխատանքի սովորույթներին, ձգտել են բարձրացնել իրենց աշխատանքի որակը, բայց մինչև օրս ինչպես հարկն է չի արծարծվել ազատ ժամանակի արդյունավետ տնօրինման ու օգտագործման հարցը։ Բայց չէ՞ որ արվեստը, սպորտը, զանազան այլ զբաղմունքներ պահանջում են որոշակի գիտելիքներ, հմտություն, իմացություն, ջանք... ուստի և ակտիվ հանգստի կազմակերպումը հույժ կարևոր է։

Նյութական արտադրության ավտոմատացմանը հետևում է նոր, մի այլ տենդենց— պակասում է պահանջը ոչ որակյալ աշխատանքի նկատմամբ, բարձրանում է ընդհանուր հանրակրթական ու մասնագիտական որակավորում ունեցող աշխատողների թիվը։

Ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության նպաստավոր պայմաններում առավել մեծանում են նյութական արտադրությանը ներկայացվող պահանջները։ Իններորդ հնգամյակի արդյունքները ցույց են տալիս, որ մեր երկրում մեքենաշինության արտադրանքի թողարկումն ավելացել է 1,7, հաշվողական տեխնիկայինը՝ 4 անգամ, իսկ ավտոմատացման սարքերինն ու միջոցներինը՝ 1,8 անգամ։ Արդյունաբերության առաջատար ճյուղի՝ մեքենաշինության զարգացման ընթացքը համապատասխանում է գիտատեխնիկական առաջընթացի արդի մակարդակին։ Արտադրության ոլորտում աշխատանքի նորագույն գործիքների ներդրումը արմատապես փոխում է աշխատանքի կազմակերպման ձևերն ու մեթոդները։

ՍՄԿԿ-ն գտնում է, որ գիտատեխնիկական առաջընթացի համակողմանի արագացումը, ինչպես և ավտոմատիկայի արդի նվաճումների գործադրումը, կոմունիստական հասարակարգի նյութատեխնիկական բազայի ստեղծման վճռական պայմանն է։

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



## Կուսակցության հավատարիմ դուստրը

### Ռ. Ս. Զեմլյաչկայի ծննդյան 100-ամյակի առթիվ

ԱՊԱՀՈՎ, ԱՆԿԱՐԻՔ ԷՐ ապրում կինցի հարուստ վաճառական Ս. Զալկինդի աղջիկը: Ուշիմ էր, խելացի, շատ վաղ նա նկատեց կյանքի հակասությունները, տեսավ, մի կողմից՝ ճոխ, ցոփ ու շվայտ ապրողներին, մյուս կողմից՝ օրվա ապրուստը տաժանելի աշխատանքով վաստակող, կյանքի բեռան տակ կքած աշխատավորին: Եվ նա գնաց ժողովրդի ազատագրության գործին զինվորագրված եղբայրների ճանապարհով: Դեռ երեխա էր, երբ մի օր ոստիկանները ներխուժեցին իրենց բնակարանը, խուզարկեցին, տակնուվրա արին ամեն բան ու տարան եղբայրներին: Այնպե՞ս մռայլ, մութ ու ցուրտ էր բանտը, ուր մոր հետ ինքն այցի էր գնում նրանց:

Իր սերնդակիցներից շատ շատերի նման նա ատեց բռնությունն ու շահագործումը, սկսեց որոնել սոցիալական արդարացի կարգերը տանող ճանապարհը: Որոնումները նրան տարան դեպի մարքսիստական հեղափոխական կուսակցությունը, որ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ նոր էր հիմնադրվել Ռուսաստանում:

Հեղափոխական ակտիվ գործունեությամբ շատ վաղ աչքի ընկած Ռոզալյա Սամոյլովնան ընտրվում է ՌՍԴԲԿ Կիևի կոմիտեի անդամ: Նրա ողջ կյանքը հեղափոխության, աշխատավոր ժողովրդի ազատագրության պայքարին նվիրվածության օրինակ է: Ո՛չ բանտն ու աքսորը, վտարանդիությունը, ո՛չ հայրենիքից ու հարազատներից հեռու լինելը չընկճեցին նրա կամքը, ժողովրդին բոլորանվեր ծառայելու նրա վճռականությունը: Իր ընտրած խութաշատ ճանապարհի արգելքները հաղթահարելու համար շատ ծածկանուններ ունեցավ նա — Օսիպ, Օսիպով, Դեմոն... Զեմլյաչկա: Մոռացության մատնվեց Զալկինդը, և իր մտերիմների ու ծանոթների, հեռու ու մոտիկ ընկերների համար Զեմլյաչկա էր նա և այդպիսին էլ մնաց իրեն հաջորդող սերունդների համար:

1901 թվականին Իլյիչը նամակով հանձնարարում է նրան՝ մեկնել Օդեսա, ապա՝ Եկատերինոսլավ, իբրև «Искра»-ի գործակալ: Լենինը գրում էր, որ գործակալների այդ ցանցն էլ հենց դառնալու է այն կազմակերպության կմախքը, որպիսին պետք էր մասսաների հեղափոխական շարժումը ղեկավարելու համար: «Искра»-ի գործակալը գաղափարական անհաշտ պայքար է ծավալում հակալենինյան «Պայքար» խմբի դեմ, որն ավարտվում է իսկրայականների հաղթանակով. ՌՍԴԲԿ II համագումարի պատգամավորի մանդատն ստանում է իսկրայական կազմակերպությունը: Ցյուրիխից Իլյիչը ակնդետ հետևում է Օդեսայի իրադարձություններին, հետաքրքրվում մանրամասներով: 1901 թ. Իլյիչը Զեմլյաչկային կանչում է արտասահման՝ հանգամանորեն ծանոթանալու այդ ամենին: Առաջին հանդիպումը, և «նրա երկու-երեք դիտողություններից հետո, — գրում է Ռոզալյա Սամոյլովնան Իլյիչի մասին հիշողություններում,— ինձ համար նոր լույսի տակ պատկերացան կազմակերպական պայքարի հեռանկարները, և այդ պայքարի ամենահնարավոր ձևերը ռեալ կերպարանք ընդունեցին... Համոզվեցի, թե Իլյիչը որքա՜ն հիանալի գիտե բանվորական շարժումը և ինչպես է դրա հիման վրա վարպետորեն նշում ապագա հեղափոխական պայքարի մեծ հեռանկարները»:

Ռոզալյա Սամոյլովնան վերադառնում է Ռուսաստան՝ II համագումարի նախապատրաստական աշխատանքներ տանելու, հակալենինյանների դեմ մղվող գաղափարական պայքարը կազմակերպելու համար: Եկատերինոսլավի կազմակերպության կողմից նա ընտրվում է II համագումարի պատգամավոր:

Ձերբակալություններից խուսափելու համար, Լենինի պահանջով Զեմլյաչկան կրկին մեկնում է արտասահման:

Տենդագին, լարված էին նախահամագումարյան օրերը: Այստեղ մոտիկից նա տեսնում է, թե պրոլետարիատի առաջնորդը «...ինչպես է դաժանորեն խարազանում, իր երկաթյա տրամաբանության մուրճով խփում բոլոր կամազուրկներին ու տատանվողներին, կոփելով բոլշևիկյան ըմբռնում, բոլշևիկյան հետևողականություն ու տոկունություն»: Լինելով Իլյիչի գաղափարակիցը, գործելով նրա խորհուրդներով, կատարելով նրա առաջարկություններն ու հանձնարարությունները՝ Զեմլյաչկան նրանից ժառանգեց այդ հատկությունները, և իր ողջ գործունեության ընթացքում աչքի ընկավ սկզբունքայնությամբ, հետևողականությամբ, բոլշևիկյան խստապահանջությամբ:

Սերգեյ Իվանովիչ Գուսևի հետ, Լենինի հանձնարարությամբ, նա մեկնում է Բրյուսել՝ նախապատրաստելու II համագումարը:

1903 թ. հուլիսի 17-ին Բրյուսելում սկսված ՌՍԴԲԿ II համագումարը հարկադրաբար շարունակվեց Լոնդոնում և տևեց մինչև օգոստոսի 10-ը: Բրյուսելից Լոնդոն Զեմլյաչկան մեկնեց Իլյիչի և Նադեժդա Կոնստանտինովնայի հետ: Նավում Ռոզալյա Սամոյլովնան և Կրուպսկայան հիվանդացան ծովախտով, իսկ Իլյիչը խնամում էր նրանց, հոգում նրանց համար:

Ինչպես ՌՍԴԲԿ II, նույնպես և հետագա համագումարներում, որոնց մասնակցել է Զեմլյաչկան, նա գործել է որպես հավատարիմ լենինյան, պայքարել մենշևիկների դեմ, երբեք չշեղվելով, ամեն կերպ օգնելով կուսակցությանը, նրա առաջնորդին՝ իր բոլոր ձեռնարկումներում: «Մենք պայքարում էինք լենինյան ամեն մի բառի, ամեն մի բանվորի համար,— գրել է Ռոզալյա Սամոյլովնան,— «Искра»-ի ամեն մի հակառակորդի մեջ մենք տեսնում էինք թշնամու, որը, գործելով կուսակցության ճիշտ կառուցվածքի դեմ, կուսակցությանը հրում էր դեպի նրա համար մահացու օպորտունիզմը, անորոշությունը»:

Մեծ է II համագումարի պատմական նշանակությունը. այն շրջադարձային կետ հանդիսացավ միջազգային բանվորական շարժման մեջ: Իսկրայականները պառակտվեցին: Կատաղի պայքար սկսվեց նրանց հեղափոխական մասի՝ բոլշևիկների և օպորտունիստների՝ մենշևիկների միջև. վերջիններս չէին ենթարկվում մեծամասնությանը: III համագումարը կենսական անհրաժեշտություն էր: 1904 թ. 22 բոլշևիկների՝ Շվեյցարիայում կայացած խորհրդակցությունից հետո վերադառնալով Ռուսաստան՝ որպես բոլշևիկների կոմիտեի բյուրոյի անդամ, Ռոզալյան ակտիվ գործունեություն է ծավալում III համագումարի նախապատրաստման առթիվ: Նա լինում է Ռիգայի, Մոսկվայի, Պետերբուրգի, Տվերի, Տուլայի, Բաքվի, Յարոսլավլի, Վյատկայի կազմակերպություններում: Ինչպիսի՜ ջանքեր պահանջեց Հարավային, Կովկասյան, Հյուսիսային բոլշևիկյան կոմիտեների կոնֆերանսների կազմակերպումը: Իլյիչի՝ Զեմլյաչկային ուղղված նամակները ցույց են տալիս, թե որքան բարձր էր գնահատում Լենինը այդ շրջանում նրա ծավալած գործունեությունը՝ պահանջելով մշտապես իրազեկ պահել իրեն այդ իրադարձություններին: «Թանկագին բարեկամ,— գրում էր Իլյիչը 1904 թ. դեկտեմբերին, Հյուսիսային կոնֆերանսի արձանագրությունները ստանալուց հետո,— ...Դուք հիանալի եք աշխատել... Ձեզ կարելի է շնորհավորել հաղթանակի առթիվ: Այդպիսի կոնֆերենցիան դժվարագույն գործ է ռուսական պայմաններում: Ինչպես երևում է, այն գերազանց է հաջողվել»: Մի քանի օր անց, վերստին անդրադառնալով 15 կոմիտեների, բոլշևիկներին համախմբելու, երեք կոնֆերանսների կազմակերպման գործում Զեմլյաչկայի կատարած աշխատանքին, Լենինը գրում է. «Առանց Ձեզ մենք չէինք անի և չենք անում ոչ մի քայլ»:

Ռուսաստանի հետ Լենինին կապող գործարար օղակներից մեկն էր Զեմլյաչկան, նորանոր հացեներ էր ուղարկում նրան, օգնում դրամի հայթայթմանը, որի կարիքն այնքան մեծ էր, տեղեկացնում Ռուսաստանում տիրող կարծիքներին... «...Ես մտադիր եմ,— գրում էր նրան Իլյիչը,— Ռուսաստանի կարծիքը լրիվ հաշվի առնել ամեն ինչում և անպայման ու

լրջորեն մի բան եմ խնդրում... ավելի հաճախ հաղորդեցեք ինձ այդ կարծիքը...»:

1905 թ. ապրիլին Լոնդոնում հրավիրվեց ՌՍԴԲԿ III համագումարը, որի պատգամավորներից էր Զեմլյաչկան՝ ընտրված Պետերբուրգի կազմակերպության կողմից: Համագումարից անմիջապես հետո Լոնդոնից նա գալիս է Մոսկվա, որպես այդտեղի բոլշևիկների կոմիտեի քարտուղար, ուր դեկտեմբերյան զինված ապստամբության պարտությունից հետո գործում է զինվորական կազմակերպություններում: Մի քանի օր անց պրովոկատորի մատնությամբ նա ձերբակալվում է:

Բանտում են և բոլշևիկների զինվորական կազմակերպության ղեկավարները: Կազմակերպվում է բոլշևիկների փախուստը. Ռոզալյան հրաժարվում է փախչել. ինքն այլ խցում էր, և այդ հանգամանքը կարող էր խանգարել ընկերների փախուստին: Եվ ահա ընկերներն ազատ են: Հասել է և իր փախչելու հերթը: Բանտարկյալներին ջուր բաժանելու ժամն է: Շտապ հագնելով ընկերների բերած հագուստը, լայնեզր, քողավոր գլխարկը, կիսաբաց դռնից միջանցք դուրս գալով, նա թողնում է բանտը: Բանտային սպաների հետաքրքրասեր հայացքների ուղեկցությամբ պճնազեղ տիկինը կառք է նստում և հեռանում:

Անշուշտ, Ռոզալյա Սամոյլովնայի՝ ընդհատակյա կոմիտեի անդամի վերջին ձերբակալությունը չէր այդ. սաստիկ վատառողջ, 1909 թվականին Իլյիչի պահանջով նա մեկնում է արտասահման: Այնտեղ Ռոզալյա Սամոյլովնան հաճախակի լսում է Վլադիմիր Իլյիչի դասախոսությունները, ներկա լինում նրա վարած բանավեճերին... Եվ տարի ու կես անց, գաղափարապես ավելի զինված, գաղտնի վերադառնում է Մոսկվա: «Երբ գալիս էի Ռուսաստան,— հիշում է Զեմլյաչկան,— Իլյիչը ցուցում տվեց, որ իմ հետագա գործունեության ընթացքում ես պետք է առավել ուշադրություն հատկացնեմ մտավորականության հետ հաստատելիք կապին: ...հետագայում համոզվեցի, որ կուսակցության առջև ծառացած կարևորագույն խնդիրներից մեկն էր այդ»: Բոլշևիկների Մոսկովյան մարզային կոմիտեի բյուրոյի անդամը շուտով ընտրվում է Մոսկվայի բոլշևիկյան կոմիտեի քարտուղար:

1916—1917 թվականներն էին. Զեմլյաչկան գլխովին նվիրվում է աշխատավոր զանգվածներին, զինվորներին հեղափոխությանը նախապատրաստելու գործին: Փետրվարյան հեղափոխության օրերին ամենուր զինվորները միանում էին ապստամբներին, «Մերոնց վրա չե՞նք կրակի»—վճռում էին նրանք և ոտքի ելնում ինքնակալության դեմ: Բոլշևիկների եռանդուն գործունեությունը օգնում էր մարդկանց՝ կողմնորոշվելու, համախմբվելու, պայքարի նպատակն առավել հստակ պատկերացնելու: «Այլևս չի կարելի լռել ու սպասել,— գրված է նրանց տարածած թռուցիկներում,— մոխրագույն շինելներով ու կապույտ վերնաշապիկներով բանվոր դասակարգն ու գյուղացիությունը, ձեռք ձեռքի տված, պետք է պայքարեն ցարական ողջ ռեժիմի դեմ՝ վերջ տալու համար Ռուսաստանը ճնշող այդ ամոթանքին... Հասել է բացահայտ պայքարի ժամը»: «Լավ է մեռնել փառավոր մահով, պայքարելով հանուն բանվորների գործի, քան գլուխը դնել ռազմաճակատում, կապիտալի շահերի համար, կամ հյուծվել սովից և ուժից վեր աշխատանքից: ...Բոլորս՝ հեղափոխության կարմիր դրոշների տակ... Կորչի՜ ցարական միապետությունը»:

Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը նշանավորվեց ցարական ինքնակալության տապալմամբ. ստեղծվեց երկիշխանություն: Ինքնակալությունը տապալվեց, բայց ժողովրդի կյանքում քիչ բան փոխվեց. իշխանությունը բուրժուազիայի ձեռքում էր, իսկ բոլշևիկները ծառանում էին նրանց դեմ, ամեն ինչ անում՝ վերջ տալու սկսված իմպերիալիստական պատերազմին, բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը վերածելու սոցիալիստականի:

1917 թ. ապրիլի 4-ին Շվեյցարիայից Պետերբուրգ է վերադառնում Վլադիմիր Իլյիչը: Երեք օր անց «Правда»-ում հրապարակվում են նրա հռչակավոր «Ապրիլյան թեզիսները», ուր խնդիր է դրվում հեղափոխության առաջին էտապից անցնել երկրորդին, որը իշխանությունը պետք է տա պրոլետարիատի և գյուղացիության ձեռքը:

Ամիսների լարված, տենդագին աշխատանք: Կիսալեգալ վիճակում 1917 թ. հուլիսին կայացավ կուսակցության VI համագումարը, որը, մանիֆեստով դիմելով բանվորներին, զինվորներին ու գյուղացիներին, կոչ արեց նախապատրաստվել զինված ապստամբության, սոցիալիստական հեղափոխության:

Սկսվեց Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը: Այդ փոթորկոտ օրերին Զեմլյաչկան ամենապատասխանատու տեղամասերում էր. նա ոգևորում, կազմակերպում, հաղթանակի հավատով էր համակում աշխատավորներին, մարտի տանում նրանց: Նա ղեկավարել է Մոսկվայի Ռագոժսկո-Սեմյոնովսկի շրջանի աշխատավորների հեղափոխական ելույթները:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից կարճ ժամանակ անց սկսվում են քաղաքացիական կռիվները: Ռոզալյա Սամոյլովնան, որ զինվորների շրջանում գաղափարական-քաղաքական աշխատանքի հարուստ փորձ ուներ, կուսակցության Կենտրոնական կոմիտեի կողմից ուղարկվում է կարմիր բանակ՝ քաղաքական աշխատանքի:



Մոսկովյան մի խումբ կոմունիստների հետ Զեմլյաչկան մեկնում է Օրշա, Չեխոսլովակյան ռազմաճակատ զորամասեր ուղարկելու համար: Գնդերից մեկը, էսեռական ագիտացիայի ազդեցությամբ, պատրաստվում էր անցնել գերմանական սահմանագիծը: Այստեղ դրսևորվում են Ռոզալյա Սամոյլովնայի արտակարգ համարձակությունը, մարդկանց համոզելու, նրանց հետ լեզու գտնելու հմտությունը: Անզեն, միայն վարորդի ուղեկցությամբ նա մեկնում է այդ գունդը: «Չէի հավատում, թե չեմ կարողանա համոզել մասսաներին: Գիտեի, որ զրույցները համոզված կամ կուրացած անհատների հետ ոչինչի չեն հանգեցնի, բայց գտնում էի, որ մասսային անհրաժեշտ է բացատրել...»:

Մոտ մեկժամյա հանդիպումից, ճառից հետո կարմիր բանակայինները օվացիա են կազմակերպում նրա պատվին, հակառակորդներին թույլ չտալով ծպտուն հանել: Երկու շաբաթ անց գունդը մեկնում է Չեխոսլովակյան ռազմաճակատ:

1918—1921 թվականներին քաղաքացիական կռիվների ամենակարևոր ռազմաճակատներից էր Արևելյանը: Վտանգի տակ էին Պերմը, Կոտլասը, Վյատկան: Զեմլյաչկան Հյուսիսային Դվինայի բրիգադում է: «Կարելի է վստահությամբ ասել,— գրել է նորաստեղծ կարմիր բանակի լավագույն քաղաքական աշխատողներից մեկը՝ Ռոզալյա Սամոյլովնան,— որ Հյուսիսում մենք հաղթեցինք ոչ թե սվինների ուժով, որոնք շատ քիչ էին, և շատ թույլ էին դրանք բռնող ձեռքերը: Հաղթեցինք այն գիտակցականությամբ, որ սերմանեցինք մեզնից առաջ քաղաքական ոչ մի աշխատանք չտեսած, խավար մասսաների շրջանում»: Զեմլյաչկան այնտեղ է, ուր բուռն են մարտերը, վիճակը՝ ծանր, վտանգավոր: 1918 թ. նոյեմբերից 8-րդ, ապա՝ 13-րդ բանակների քաղբաժնի պետն է նա, միավորում, ոգեվորում, մարտական նոր սխրանքների է կոչում կարմիր հրամանատարը: Շատ անգամ անզեն, մեն-մենակ հայտնվում է նա դասալիքների ջոկատներում, կարողանում փոխել զինվորների տրամադրությունը, վերադարձնել նրանց կարմիր բանակի շարքերը: Երկաթյա կոմիսար էին կոչում նրան այդ օրերին, որ իր քաղաքական-կազմակերպական եռանդագին , հայրենանվեր գործունեությամբ հաստատուն հիմքերի վրա դրեց կարմիր զորամասերի մարտունակությունը, նպաստեց կարմիր բանակի վերջնական հաղթանակին: Այդ ամենի համար 1921 թ. Զեմլյաչկան պարգևատրվում է Կարմիր դրոշի շքանշանով:

Ավարտվեց քաղաքացիական պատերազմը: Երկիրը քայքայված էր, ժողովուրդը՝ հոգնած, կարիքից ու քաղցից հյուծված: Բոլշևիկյան կուսակցության առաջնահերթ խնդիրը երկրի տնտեսական վերականգնումն էր, ներքին թշնամուն ընկճելը: Մոսկվայի Զամոսկվորեցկի շրջկոմում քննարկվում է պարենային ջոկատների կազմակերպման հարցը· Զեկուցում է շրջկոմի քարտուղարը՝ Զեմլյաչկ․ Հանկարծ դահլիճում աշխուժություն է նկատվում, ծափահարություն... Իլյիչն էր աննկատելիորեն մտել դահլիճ ու մի անկյունում նստած, ուշադիր լսում էր զեկուցողին, ելույթ ունեցողներին:

— Հենց սրանք, այս երկրագործ բանվորի նման ընկերները պետք է դառնան մեր պարենային ջոկատների անդամներ,— շշուկով Զեմլյաչկային ասաց Վլադիմիր Իլյիչը:

Իսկ երբ Զեմլյաչկան ճանապարհում էր նրան՝

— Վաղո՜ւց ինձ այսպես լավ չէի զգացել,— ասաց Լենինը:

Նրան հիացրել էին աշխատավորության այդպիսի սրտացավությունը, երկրի վիճակի բարելավման համար նման ջերմ հոգածությունն ու նախաձեռնությունը, ակտիվ մասնակցությունը այդ դժվարին գործին:

Ազնիվ ու շիտակ, ժողովրդանվեր գործիչը նշանակվում է բանգյուղտեսչության ժողովրդական կոմիսարիատի բողոքների միավորյալ բյուրոյի վարիչ: Խստապահանջ իր նկատմամբ, նույնքան պահանջկոտ էր և իր ենթակաների, շրջապատի հանդեպ: Գոյություն ունեցող թերությունների՝ բյուրոկրատիզմի, քաշքշուկի, թալանչիական տրամադրությունների դեմ ծավալված արշավանքի առաջին գծում է այդ ամենի երդվյալ թշնամին. նրա եռանդուն ջանքերով օրեցօր ստվարանում են այդ պայքարի մասնակիցների շարքերը:

1929 թվականի մարտի 10-ին Զամոսկվորեցկի թատրոնի դահլիճում ասեղ գցելու տեղ չկար. բանվորական հասարակայնության դատի առաջ էին կանգնած մերկացված 19 բյուրոկրատներ. դատը վարում էր Զեմլյաչկան: Նրանցից վատթարագույնները՝ 15 մարդ, հեռացվեցին աշխատանքից. նրանցից շատերին արգելվեց այդուհետ պատասխանատու աշխատանք կատարել: Զեմլյաչկան կարևոր էր համարում բողոքների միավորյալ բյուրոյի բաժնի աշխատանքի լայն մասսայականությունը, բարձր էր գնահատում դրա դաստիարակչական նշանակությունը. «Այդ դատը առավել համոզիչ ցույց տվեց, որ բյուրոկրատական այլասերումները մեզ մոտ չեն կարող անպատիժ մնալ»,— դատից երկու օր անց գրված էր «Правда»-ում:

Երկար տարիներ աշխատելով կուսակցական ու պետական վերահսկողության մարմիններում, նա կազմակերպել, ղեկավարել է պայքարը մեր հասարակության մեծագույն չարիքների՝ բյու-

րոկրատիայի, քաշքշուկի, աչքակապության և բացասական այլ երևույթների դեմ, դառնալով ահն ու սարսափը բոլոր շահամոլների ու ընչաքաղցների, պաշտոնամոլների ու գլուխ պահողների, ազնիվ աշխատանքից խուսափողների.

*Կանցելյարշչինայից ու քնկոտությունից*
*Որ զերծ մնաս ամբողջովին,*
*Պատկերն ընկեր Զեմլյաչկայի*
*Կախի՛ր, բարեկա՛մս, քո պատին:*

Այդպիսիների համար նկարից հարյուրապատիկ սարսափելի է ինքը՝ օրիգինալը, կարդում ենք Դեմյան Բեդնու՝ այդ օրերին «Правда»-ում լույս տեսած ոտանավորում:

Իսկ աշխատավոր հասարակ մարդը սիրում էր իր շահերի անշահախնդիր պաշտպանին, այդ մարդկային ու հասարակ, սրտացավ գործչին. նրան էին դիմում բանվորը, գյուղացին, ուսուցիչը, մանկատների ու դպրոցների սաները, թոշակառուներն ու տնային տնտեսուհիները: Ամենքին օգնում էր նա՝ ինչով հնարավոր էր, ինչով կարող էր: Ո՛չ միայն անդուլ գործում էր նա, այլև հոգում էր սովետական ու կուսակցական նորանոր կադրերի ստեղծման, դաստիարակման մասին: Ահա թե ինչ է գրում Ալեքսանդր Ֆադեևը նրան ուղղված իր բազմաթիվ նամակներից մեկում. «Քանի՜ անգամ եմ ուզել պատմել Ձեզ, թե իմ և շատ ու շատ ուրիշների համար (հիշեցեք Թևոսյանին, Խվալեբնովին) դաստիարակչական ինչպիսի՜ մեծ, ոչնչի հետ չհամեմատվող նշանակություն են ունեցել համատեղ աշխատանքն ու ընկերական հաղորդակցությունը Ձեզ հետ: Ահա ինչու ես շատ ու շատ շնորհակալ եմ Ձեզնից: Ձեր այդ ողջ ուսմունքը միս ու արյուն է դարձել մեզ համար»:

1936 թ. Սովետական վերահսկիչ հանձնաժողովի անդամ Ռոզալյա Սամոյլովնան պարգևատրվում է Լենինի շքանշանով: Դա կուսակցության ու կառավարության արժանի գնահատականն էր այն անխոնջ սկզբունքային պայքարի, որ մղել է նա սովետական ու տնտեսական կազմակերպություններում նկատվող բյուրոկրատիզմի, անտնտեսվարության և անպատասխանատվության դեմ, գնահատականը այն բացառիկ ծառայությունների, որ մատուցել էր նա սովետական ապարատի բարելավման, պարզեցման գործին:

Հայրենական պատերազմի տարիներին ևս ՍՍՀՄ ժողկոմխորհին կից սովետական վերահսկողության հանձնաժողովի նախագահը իր բազմամյա փորձը, ողջ եռանդն ու ունակությունները նվիրում է մեր հայրենիքի հաղթանակի գործին: Ռոզալյա Սամոյլովնան վախճանվեց հաղթանակից երկու տարի անց. նրա աճյունն ամփոփված է Կրեմլի պատի մեջ, իր գաղափարակից ու զինակից շատ ընկերների կողքին: Լենինյան կուսակցության հավատարիմ զինվորի կյանքն ու գործունեությունը ուղեցույց օրինակ կարող են լինել ներկա ու գալիք սերունդների համար:

Հիրավի, որքա՜ն ուսանելի ու ճշմարտացի են մի խումբ ընկերների՝ «Правда»-ում հրապարակած խոսքը Ռոզալյա Սամոյլովնայի 60-ամյակի առթիվ, որով ցանկանում ենք ավարտել մեր այս ակնարկը լենինյան կուսակցության ակտիվ գործչի, սովետական կարգերի արթուն պահակի, ժողովրդի շահերի անաչառ պաշտպաններից մեկի մասին. «Այնպիսի մարդկանց, ինչպիսին Զեմլյաչկան է, կա՛մ սիրում են, կա՛մ ատում: Սիրում են բոլոր նրանք, ովքեր անձնվիրաբար պայքարում են հանուն կոմունիզմի, ատում են բանվոր դասակարգի թշնամիները—ռենեգատները, փախստականները, այն ողջ տականքը, որը լավ գիտե և իր վրա փորձել է Զեմլյաչկայի խոր սկզբունքայնությունը, նրա ուժեղ կամքը, անսասան հավատարմությունը կուսակցությանը»:

**ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ**


**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ. (պատասխանատու քարտուղար), ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ԿՃՈՋՅԱՆ Թ. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ)

Адрес редакции: 375033, Ереван 33. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 05563 Պատվեր 1374 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 14.100 Գինը 20 կոպ.*

*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 12/VII-1976 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խանջյան փող. № 28:*





# *Ձեզ համար, ընթերցողնե՛ր*

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի բանաձևը ՀԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ: *«Հայաստան» հրատ., 1976:*

Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության օրենքը ժողովրդական կրթության մասին: *«Հայաստան» հրատ., 1976:*

Ա. ԲԱՂՄԱՆՅԱՆ— Հայաստանի կոմկուսը բանվոր-գյուղացիական դաշինքի ամրապնդման համար մղված պայքարում: *«Հայաստան» հրատ., 1976:*

Հոկտեմբերի գործիչները կրոնի և եկեղեցու մասին: *(Հոդվածներ: Ճառեր: Զրույցներ: Հիշողություններ): «Հայաստան» հրատ., 1976:*

Հայ մշակույթի նշանավոր գործիչները V—XVIII դարեր: *Եր. համալս. հրատ., 1976:*

Ծ. ԱՂԱՅԱՆ— Հայ ժողովրդի ազատագրական պայքարի պատմությունից: *ԳԱ հրատ., 1976:*

Գ. ԴՄԻՏՐԻԵՎ— Սոցիալ-քաղաքական զարգացման հարցեր: *«Հայաստան» հրատ., 1976:*

Կատարման ստուգումը ղեկավարման կարևորագույն սկզբունքն է: *«Հայաստան» հրատ., 1976:*

Սոցիալիզմի քաղաքատնտեսության բուրժուական ռեֆորմիստական և ռևիզիոնիստական տեսությունների քննադատությունը: *(Ուսումնամեթոդական ցուցումներ): Եր. համալս. հրատ., 1976:*

Կ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ— Արդյունաբերության կառավարման կատարելագործման հիմնական ուղղությունները: *«Հայաստան» հրատ., 1976:*

Մ. ԳՐԻԳՈՐՅԱՆ— Հայաստանում մարքսիստական քաղաքատնտեսության տարածման պատմությունից: *Եր. համալս. հրատ., 1976:*

Մ. ԱՌԱՔԵԼՅԱՆ— Արտադրողական ուժերի զարգացումը ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում: *«Հայաստան» հրատ., 1976:*

Մարքս-լենինյան փիլիսոփայության հիմունքները: *Դասագիրք բուհերի ուսանողության համար: «Հայաստան» հրատ., 1976:*

В. Александров — Борьба КПСС за единство и сплоченность международного коммунистического движения. Изд. «Знание», 1976.

Т. Живков — **Проблемы строительства развитого социалистического общества.** Изд. «Мысль», 1976.

К. Манукян — **Принцип равноправия государств в международном праве.** Изд. Ергосунта, 1976.

К. Долгов — **Философия. Искусство. Политика.** Критика современных буржуазных концепций. Изд. «Знание», 1976.

В. Иванов — **Антикоммунизм — главное идейное оружие империализма.** Изд. «Белорусь», 1976.

А. Вольский и А. С. Кобзев — **Союз науки, техники и производства.** Опыт производственного объединения ЗИЛ. Изд. «Экономика», 1976.

А. Мартиросян — **Управление промышленностью и партийные организации.** Изд. «Айастан», 1976.

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՎՏՈՄԱՏ ԽԱՎԱՀԱՎԱՔ

*Գործվածքային արդյունաբերության մեջ բավական վտանգավոր են փոշին ու մանրաթելի խավը. դրանք փչացնում են մեքենաները, իջեցնում արտադրանքի որակը, վնասում մարդու առողջությանը, դառնում հրդեհի պատճառ: Տեխնոլոգիական փոշու և խավի հեռացումը մանվածքային արդյունաբերության հրատապ ու բարդ խնդիրներից է: Մանվածքային արդյունաբերության հատուկ կոնստրուկտորական բյուրոն մշակել է ավտոմատ խավահավաք, որը հսկա փոշեծծիչների նման անընդհատ մաքրում է մեքենաներն ու դրանց միջանցքները: Դազգահների դժվարամատչելի տեղերը մաքրվում է օդահոսանքով, այնպես որ այնտեղ կուտակված փոշին ու խավն ընկնում են խավահավաքի ծայրափողակի մեջ:*

*Ավտոմատ խավահավաքի շնորհիվ յուրաքանչյուր բանվորուհի տնտեսում է 2 ժամ, ջուլհակուհու աշխատատեղում փոշին պակասում է 12 անգամ:*

## ՏԱՐԱՆ ԲԱՐԵԼԱՎՈՒՄ Է ՀԱՆՔԱՋՅՈՒԹԸ

*Դժվար է պատկերացնել, որ շինարարական նյութեր փոխադրող տարան կարող է բարելավել կառույցի որակը: Բայց հենց այդպիսի նորույթ ստեղծվեց Հունգարիայում:*

*Այնտեղ մշակեցին հանքաձյութը փոխադրող պոլիէթիլենե պարկ: Հանքաձյութը շինհրապարակի կաթսաների մեջ է լցվում պարկով: 145 աստիճան ջերմության դեպքում պոլիէթիլենը հալվում է, դրանով իսկ բարելավելով ասֆալտի որակը: Ճանապարհածածկը դառնում է ամուր, դիմացկուն, երկարակյաց, չի ճաքճքում եղանակային տատանումներից: Այսպիսով, օգտագործելի են դառնում և կեղտոտ պարկերը, իսկ շինհրապարակի շրջապատն ավելի մաքուր է մնում:*

## ԱԽՏՈՐՈՇՈՒՄ ԷՀՄ-Ի ՕԳՆՈՒԹՅԱՄԲ

*Նույնիսկ փորձված բժիշկին միշտ չի հաջողվում արագ ախտորոշել բարդ և «բազմադեմ» հիվանդությունը՝ ռեմատիզմը: Լատվիայի կարդիոռեմատոլոգիական կենտրոնի մշակած ախտորոշման աղյուսակն զգալիորեն թեթևացնում է այդ գործը: Դրա հարցերը վերաբերում են 68 նշանների ու ախտորոշիչների, որոնցից յուրաքանչյուրի նշանակությունն արտահայտված է կենցաղի մասին տեղեկացնող ինֆորմացիայում. այդ ողջ ինֆորմացիան տեղեկացնում է հիվանդության առկայության և դրա աստիճանի մասին: Աղյուսակը, որից կարող է օգտվել ամեն մի բժիշկ, մշակվել է մի քանի հազար հիվանդությունների պատմությունները վերլուծող ու «վերհիշող» ԷՀՄ-ի օգնությամբ. այն զանազանում է ռեմատիզմի և նման հիվանդությունների ամբողջ խմբեր:*

## «ՊՈՒԼԿՈՎՈ» ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ՀԱՇՎԻՉ ՄԵՔԵՆԱՆ

*Լենինգրադի «Պուլկովո» օդանավակայանում սկսվել է արտադրա-տնտեսական գործունեության կառավարման ավտոմատ սիստեմների առաջին հերթի թողարկումը: Էլեկտրոնային հաշվիչ մեքենան էլեկտրոնային հիշողության մեջ պահպանում է անհրաժեշտ բոլոր տեղեկությունները ավիացիոն տեխնիկայի սպասարկման և վերանորոգման համար անհրաժեշտ տասնյակ հազարավոր պահեստամասերի և ագրեգատների մասին:*

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՋԵՐՄԱԹԵՐԱՊԻԱ

*Այրում մարմնի 150 կետում. մոտավորապես այսպես կարելի է կոչել բուժման ավանդական մեթոդը, որ հազարամյակների հնություն ունի: Հինավուրց ջերմաթերապիայում օգտագործվում էին ամենատարբեր օժանդակ նյութեր— բույսերի արմատներ ու տերևներ, տաքացրած քարեր, ավազ, տաք գոլորշի, զանազան յուղեր ու ճարպեր: Հետաքրքրական է մի քանի հիվանդությունների բուժումը: Օրինակ, ատամի ցավը բուժել են ցավող ատամի արանքում դնելով սխտորի շատ բարակ շերտ: Մոնղոլ բժիշկների բազմաթիվ ուսումնասիրությունները, գրում է «Մոնղոլիա» ամսագիրը, վկայում են, որ հինավուրց ջերմաթերապիան բավական արդյունավետ է, այն լայնացնում է արյունատար անոթները, բարձրացնում օրգանիզմի ընդհանուր տոնուսը, լավացնում, արագացնում արյան շրջանառությունը, դառնում իսկ նպաստելով մի շարք հիվանդությունների հիվանդածին մանրէների ոչնչացմանը:*